## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**6** ՀՈՒՆԻՍ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ՄԵԾ ՏՈՆԻՆ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳՈՐԾԵՐ

Դեկտեմբերի 30-ին սովետական ժողովուրդը քաղաքական և աշխատանքային հսկայական խանդավառությամբ կնշի իր պատմության մեծ ու փառապանծ տարելիցը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման կեսդարյա հոբելյանը: Մեր երկրի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ինտելիգենցիան այդ հոբելյանը դիմավորելու են կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ասպարեզում ձեռք բերած նորանոր նվաճումներով:

ՍՍՀՄ կազմավորումն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ-տնտեսական հետևանքներով ակնառու տեղ է գրավում սովետական պետության պատմության մեջ և ունի հսկայական միջազգային նշանակություն: Այն կարևոր ուղենիշ է ամբողջ մարդկության սոցիալական առաջադիմության ասպարեզում: Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունն ամբողջ աշխարհին ցուցադրեց ժողովուրդների կամավոր միության ամենակենսունակ ձևը: Անցած կեսդարյա ուղու արդյունքները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ միութենական բոլոր հանրապետությունների ձեռք բերած նվաճումները հանդիսանում են լենինյան ազգային քաղաքականության փայլուն հաղթանակի լավագույն հաստատումը:

Մեր կուսակցության ու ժողովրդի գաղափարական կյանքում խոշոր իրադարձություն էր ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի՝ «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» որոշումը: Քաղաքական և գաղափարական-տեսական այդ կարևոր փաստաթուղթը վառ կերպով բնութագրում է Սովետական Միության ստեղծման և զարգացման համաշխարհային պատմական նշանակությունը, նրա նվաճումներն ու հաջողությունները, ազգային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի կենսահաստատ մեծ ուժը: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունների առջև խնդիր դրեց ՍՍՀՄ 50-ամյակի տոնակատարության նախապատրաստությունը դիտել որպես մեր երկրի ազգերի ու ազգությունների միասնության, բարեկամության ու եղբայրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթանակի համաժողովրդական մեծ տոնահանդես, բոլոր աշխատավորներին կոչ արեց կուսակցության XXIV համագումարի առաջադրանքների իրականացման գործում ձեռք բերած աչքի ընկնող հաջողություններով նշանավորել մեծ հոբելյանը:

Գոհունակությամբ պետք է նշել, որ համագումարից հետո անցած մեկ տա-
րում վառ և համոզիչ ապացուցվեց կուսակցության կանխագծումների ու որո-
շումների կենսունակությունը, ժամանակակից համաշխարհային կարգացման
վրա դրանց ունեցած ազդեցությունը: Հնգամյակի առաջին տարվա և ընթացիկ
տարվա առաջին եռամսյակի արդյունքները լավագույն վկայությունն են այն
բանի, որ մեր երկիրն անշեղորեն ընթանում է համագումարի նշած ուղիով:
Կենսագործելով համագումարի որոշումները, կուսակցությունը և ժողովուրդը
մեծ հաջողությունների են հասել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի
ստեղծման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, աշխա-
տավորների կենսամակարդակի բարձրացման ասպարեզում: Հնգամյակի առա-
ջին տարում պլանից դուրս երկրում թողարկվել է մոտ 8 միլիարդ ռուբլու ար-
դյունաբերական արտադրանք: Նախատեսվածից բարձր են եղել ժողովրդական
սպառման ապրանքների արտադրության աճի տեմպերը, հաջողությամբ իրա-
կանացվել են պետական կապիտալ ներդրումների պլանները: Տնտեսական
կարգացման ընդհանրացված ցուցանիշը՝ ազգային եկամուտը, ավելացել է 16
միլիարդ ռուբլով: Ուրախացնող են նաև գյուղատնտեսության բնագավառի հա-
ջողությունները:

Սոցիալիստական հայրենիքի բարօրության համար սովետական մարդկանց
անձնվեր աշխատանքում, լենինյան կուսակցության կանխագծումների իրակա-
նացման ուղղությամբ նրանց մղած համատեղ պայքարում ավելի է ամրապնդ-
վում սովետական 15 հանրապետությունների միությունը՝ սոցիալիստական
հզոր ու միասնական ընտանիքը:

Եղբայրական հանրապետությունների այդ ընտանիքում այսօր իր արժանի
տեղն է գրավում և կոմունիզմի կառուցման գործում ակտիվ մասնակցությունը
բերում նրա իրավահավասար անդամներից մեկը՝ Սովետական Հայաստանը:
Սովետական ամբողջ ժողովրդի հետ մեկտեղ, հանրապետության աշխատավոր-
ները արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու
սովխոզներում, շինարարական կազմակերպություններում լայն շարժում են
ծավալել ՍՍՀՄ փառապանծ 50-ամյա հոբելյանն արժանավայել դիմավորելու
համար:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի
բյուրոն հաստատել է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստու-
թյան կազմակերպական և պրոպագանդիստական միջոցառումների լայն ծրա-
գիր: Հոբելյանի նախապատրաստության և անցկացման հարցերի բազմակող-
մանի և լայն քննարկմանն էր նվիրված ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի վերջերս
կայացած պլենումը, որտեղ «Հանրապետության կուսակցական կազմակերպու-
թյունների խնդիրները ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի նախապատրաստու-
թյան ուղղությամբ» զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քար-
տուղար Ա. Ե. Քոչինյանը: Պլենումը լսեց նաև Հայաստանի կոմկուսի Կենտ-
կոմի երկրորդ քարտուղար Գ. Տեր-Ղազարյանցի զեկուցումը՝ «Կուսակցական
փաստաթղթերի փոխանակման և հանրապետության կուսակցական կազմակեր-
պությունների խնդիրների մասին»:

Խոսելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի մասին, որը քննարկեց
Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը «Միջազգային դրու-
թյան մասին» և Կենտկոմի քարտուղար Ի. Վ. Կապիտոնովի զեկուցումը «Կու-
սակցական փաստաթղթերի փոխանակման մասին», ընկեր Քոչինյանը ընդգծեց



Սովետական Միության բարձրացող միջազգային հեղինակությունը, սոցիա-
լիզմի՝ համաշխարհային հարաբերությունների վճռական գործոն դառնալը: Հա-
ջողությամբ պսակվեցին Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ
կնքված պայմանագրի վավերացման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյու-
րոյի և սովետական կառավարության ջանքերը: ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերու-
թյունների պատմության մեջ առաջին անգամ ստորագրվեց այդ երկու երկրնե-
րի փոխհարաբերությունների հիմքերը որոշող համաձայնագիր, որը ոչ միայն
լրջորեն կնպաստի ԱՄՆ-ի հետ մեր հարաբերությունների հետագա կարգաց-
մանը, այլև միջազգային մթնոլորտի պարզեցմանը: Մեր կուսակցության, նրա
Կենտկոմի և քաղբյուրոյի, սովետական կառավարության վարած արտաքին քա-
ղաքականության կուրսն արժանանում է սովետական ամբողջ ժողովրդի ջերմ
հավանությանը: Մեր աշխատավորները հպարտությամբ են նշում, որ հետևո-
ղականորեն իրականացնելով խաղաղության և բարեկամության քաղաքականու-
թյունը, վճռականորեն հանդես գալով ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ, Սո-
վետական Միությունը համաշխարհային ճանաչում է ստացել: Այս հանգա-
մանքն ավելի է բարձրացնում սովետական մարդկանց հայրենասիրական ոգին,
նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիստական շինարարության
ծրագրի իրականացման համար մղվող պայքարում:

ՍՍՀՄ կազմավորման և կարգացման, սոցիալիստական հասարակարգի
կառուցման առմատական հարցերից մեկի՝ ազգային հարցի ճիշտ լուծման գոր-
ծում հսկայական դեր է կատարել կոմունիստական կուսակցությունը: *«Միայն
կոմունիստական կուսակցությունը,*— ասված է Կենտկոմի որոշման մեջ,— *որն
արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շա-
հերը, որը վարում է լենինյան ազգային քաղաքականություն, կարող է բոլոր
ազգերին ու ազգություններին համախմբել միասնական ու ինտերնացիոնալ
եղբայրության մեջ և նրանց ջանքերն ուղղել նոր հասարակարգի ստեղծման
նպատակին:* Նա պատվով կատարեց այդ պատմական խնդիրը, որովհետև ան-
շեղորեն առաջնորդվում է մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ»:

Կուսակցության առաջադրանքների կատարման համար միութենական բո-
լոր հանրապետությունների համատեղ պայքարում ավելի են ամրապնդվում
սովետական ժողովրդի ինտերնացիոնալ եղբայրությունը, նրա շահերի ու նպա-
տակների միասնությունը: Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «Բոլոր սովետական
հայրենասերները, որ հանրապետությունում էլ նրանք ապրեն, մեկ սոցիալիս-
տական հայրենիքի զավակներ են և այն ամենը, ինչ ստեղծված է հայրենի
երկրում, նրանց ընդհանուր ջանքերի արգասիքն է, սովետական ժողովուրդնե-
րի ընդհանուր նվաճումը: Կարևոր է, որ այդ տարբեր ազգությունների աշխա-
տավորները լավ հասկանան այդ, միշտ զգան իրենց պատկանելությունը միաս-
նական, բազմազգ սոցիալիստական ընտանիքին»:

Իրավահավասար հանրապետությունների եղբայրական ընտանիքում սո-
ցիալ-քաղաքական, տնտեսական և կուլտուրական կարգացման ասպարեզնե-
րում խոշոր հաջողություններ է ձեռք բերել Սովետական Հայաստանը: Դրանք
սովետների երկրի բանվորների, կոլտնտեսականների, բոլոր ազգերի և ազգու-
թյունների համատեղ աշխատանքի արդյունք են, սովետական բոլոր ժողովուրդ-
ների սոցիալիստական փոխօգնության, նրանց քաղաքական, սոցիալ-տնտեսա-
կան և գաղափարական ընդհանրության արգասիքը: Կոմունիզմի կառուցման
գործում ներդնելով արժանի ավանդ, Սովետական Հայաստանի աշխատավոր-

ները կատարում են իրենց ինտերնացիոնալ պարտքը: Այդ գիտակցությամբ էլ նրանք ձեռնամուխ են եղել կուսակցության առաջադրանքների իրականացմանը, 9-րդ հնգամյակի խնդիրների լուծմանը:

Սովետական Միության կազմավորման 50-ամյա հոբելյանի նախապատրաստությունը մեր հանրապետությունում իր գործնական արտահայտությունն է գտնում հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված մրցության մեջ: Գերակատարված է ընթացիկ տարվա առաջին եռամսյակի արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը: Անցած տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացել է 8 տոկոսով: Իրականացվում է կապիտալ և բնակարանային շինարարության մեծ ծրագիր, բարելավվում է բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկումը: Կոլտնտեսային դաշտերի աշխատավորները հաջողությամբ ավարտել են գարնանային աշխատանքները, նախապայմաններ ստեղծելով բարձր բերքի ստացման համար:

Կուսակցության XXIV համագումարը վիթխարի խնդիրներ առաջադրեց երկրի սոցիալ-տնտեսական հետագա զարգացման համար, որոնց կենսագործումը հնարավոր է միայն գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և տընտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների օրգանական կապի պայմաններում: Իսկ սա նշանակում է, որ արտադրության արդյունավետության բարձրացման համար պայքարը ժամանակակից էտապում դառնում է սոցիալիստական տնտեսավարման հիմքը: Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, հիրավի, կզալի աշխատանք կատարեցին արտադրանքի թողարկման ավելացման և որակի բարելավման ուղղությամբ: Անցյալ տարի աշխատանքի արտադրողականության աճը կազմեց 6,1 տոկոս: Առաջադրանքը կատարեցին գրեթե բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները:

Հաջողությունները, սակայն, ավելին կլինեին, եթե պետական առաջադրանքները կատարեին բոլոր ձեռնարկությունները: Ցավոք, 67 ձեռնարկություն չապահովեց արտադրանքի իրացման պլանը: Արտադրության կառավարման և պլանավորման թերությունների հետևանքով խախտվեց արդյունաբերության ռիթմիկ աշխատանքը: Արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման դանդաղ տեմպերի պատճառով բեռնման-բեռնաթափման և օժանդակ աշխատանքներում զբաղված է ամբողջ անձնակազմի 40 տոկոսը: Արտադրության արդյունավետության բարձրացման խոշոր ռեզերվ է տեխնիկական առաջընթացի արագացումը, սակայն մեր շատ գործարաններում, մասնավորապես սարքաշինական արդյունաբերության ձեռնարկություններում, թողարկվող սարքերը ետ են մնացել տեխնիկական զարգացումից, ունեն կառուցվածքային թերություններ: Սարքաշինական գիտահետազոտական ու կոնստրուկտորական կազմակերպությունները գործնական միջոցներ պետք է ձեռնարկեն նոր մշակումների ժամկետները կրճատելու, դրանց որակը բարձրացնելու ուղղությամբ:

Արդյունաբերական արտադրության կազմակերպման վիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ որոշ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարներ բռնել են պլանները կատարելու և նույնիսկ գերակատարելու դյուրին ուղին՝ դատապարտելի կերպով կիրառելով դրանք հաճախակի փոփոխելու և նվազեցնելու պրակտիկան: Այս երևույթը նկատվում է հատկապես քիմիա-



կան, սարքաշինական, թեթև արդյունաբերության ձեռնարկություններում:
Հանրապետության պետպլանի ղեկավարները սկզբունքային և ակտիվ վերա-
բերմունք պետք է ցուցաբերեն կայուն պլաններ կազմելու գործում, մեկընդ-
միշտ արմատախիլ անելով պլանավորման արատավոր ոճը:

Ընթացիկ տարվա և հնգամյակի ամբողջ առաջադրանքների հաջող կատա-
րումը, առաջին հերթին, ապահովում են մարդիկ: Այս առումով ՀԿԿ Կենտկոմի
պլենումում սրությամբ դրվեց այդ հարցը: Խոսելով արտադրամասերի տեխ-
նիկական վերազինման, աշխատանքի գիտական կազմակերպման, սոցիալա-
կան հարցերի լուծման և այլ խնդիրների մասին, ընկ. Քոչինյանը ընդգծեց,
որ անհրաժեշտ է այնպես կազմակերպել աշխատանքը, որպեսզի յուրաքան-
չյուր աշխատավոր գիտենա իր ձեռնարկության առջև դրված պրոբլեմները, նրա
զարգացման հեռանկարները, լավ պատկերացնի իր տեղն ու անելիքը այդ
գործում: Կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ գոր-
ծիմացորեն գլխավորել մասսաների աճող նախաձեռնությունը, բարձրացնել
արտադրության հրամանատարների, բոլոր աշխատավորների պատասխա-
նատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, ամրապնդել պետական կար-
գապահությունն ու կազմակերպվածությունը, նախապայմաններ ստեղծել բարձր
պարտավորությունների հաջող կատարման համար:

Մեծ հոբելյանը արտադրական նոր նվաճումներով են պատրաստվում դի-
մավորելու նաև գյուղատնտեսության աշխատողները: Անցած տարի գյուղա-
տնտեսության մեջ ավելացավ պետական և կոլտնտեսային կապիտալ ներդը-
րումների ծավալը, ընդարձակվեցին ոռոգելի հողատարածությունները, կոլտըն-
տեսությունների ու սովխոզների մեքենայական պարկը համալրվեց նոր, հզոր
մեքենաներով ու գործիքներով, ավելացավ բուսաբուծական և անասնաբուծա-
կան հիմնական մթերքների արտադրությունը: Գյուղի աշխատավորների նկատ-
մամբ կուսակցության և կառավարության ցուցաբերած հոգատարության շնոր-
հիվ գնալով բարձրանում է կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների
կենսամակարդակը:

Այս ամենի հետ մեկտեղ, սակայն, չպետք է անտեսել գյուղատնտեսական
արտադրության բնագավառում գոյություն ունեցող լուրջ թերություններն ու
բացերը: Անցած տարի, նախորդ տարվա համեմատությամբ, մեկ մոտ պակա-
սեց հացահատիկի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և պտուղների արտադրու-
թյունը: Շատ կոլտնտեսություններ և սովխոզներ հողատարածությունների վատ
օգտագործման, գիտության ու տեխնիկայի նվաճումների անբավարար կիրառ-
ման հետևանքով թերակատարեցին անասունների գլխաքանակի աճի և անաս-
նապահական մթերքների արտադրության ու վաճառքի պլանները:

Կոլտնտեսային դաշտերի աշխատավորները, հոբելյանի պատվին սոցիա-
լիստական գործարար մրցություն ծավալելով, ստանձնել են բարձր պարտավո-
րություններ և արդեն ձեռնամուխ են եղել դրանց կատարմանը: Անհրաժեշտ է
բոլոր միջոցները ձեռնարկել անասնաբուծական առանձին մթերքների արտա-
դրության և մթերումների գործում ստեղծված ճեղքվածքը փակելու համար և
նախադրյալներ ստեղծել կատարելու ու գերակատարելու պետական առաջա-
դրանքները:

Շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները լրջորեն
պետք է զբաղվեն գյուղատնտեսության հեռանկարային հարցերի ուսումնասի-
րությամբ ու իրականացմամբ, առանձնահատուկ ուշադրություն նվիրեն ջրա-

յին նոր ռեսուրսներին ու դրանց խելացի օգտագործմանը, ջրերի կուտակմանը և ջրամբարների կառուցմանը, վարելահողերը ոռոգելի դարձնելու ճանապարհով հասնեն կայուն, երաշխավորված բերքի ստացման, գյուղատնտեսական կուլտուրաների հարուստ բերքատվության բարձրացման և անասնաբուծության մթերատվության ավելացման:

Հանրապետության շինարարարական ու մոնտաժային կազմակերպությունների, շինարարական ինդուստրիայի ձեռնարկությունների կոլեկտիվները նույնպես գործնական մասնակցություն են բերում հոբելյանի պատվին ծավալված համաժողովրդական մրցությանը: Աճում են շինարարության տեմպերը թե՛ կապիտալ ներդրումների և թե՛ բնակչության մեկ շնչին ընկնող շինմոնտաժային աշխատանքների ցուցանիշներով: Հոբելյանական տարում հանրապետության աշխատավորները կստանան մեկ միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կկառուցվեն դպրոցներ՝ 33,6 հազար աշակերտական տեղով, մանկապարտեզներ և մանկամսուրներ՝ 6,8 հազար տեղով, հիվանդանոցներ, գիտության, կուլտուրայի և շատ այլ օջախներ: Սակայն պետք է նշել, որ այսօր անհետաձգելի պահանջ են դարձել շինարարական արտադրության ամբողջ կոմպլեքսի բարելավման, պետական և աշխատանքային կարգապահության բարձրացման, մեխանիզմների ու տրանսպորտային միջոցների, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը: Լուրջ մտահոգություն պետք է պատճառեն շինարարական աշխատանքների ցածր որակը, դեռևս տեղ գտնող հավելագրումներն ու չարաշահումները, գրոհայնության դեպքերը: Շինարարները պետք է հաջողությամբ իրականացնեն ստանձնած պարտավորությունները և հանրապետության համար ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող կառույցների շինարարությունն ավարտեն ժամանակին և բարձր որակով:

Այսօր օրինական հպարտություն են պատճառում գիտության առաջատար բնագավառներում՝ աստղաբաշխության, ֆիզիկայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, քիմիայի և շատ այլ ճյուղերում հանրապետության գիտնականների ձեռք բերած խոշոր նվաճումները: Մեզ մոտ պայմաններ են ստեղծվել ժողովրդական տնտեսության մեջ մաթեմատիկական մեթոդների լայն կիրառման համար: Արագ տեմպերով կարգանում է էլեկտրոնային հաշվիչ մեքենաների արտադրությունը: Գիտությունների ակադեմիան, գիտահետազոտական ինստիտուտների կուսկազմակերպությունները և ղեկավարները պետք է ուժեղացնեն կապը արտադրության հետ, կրճատեն նորամուծությունը գիտական լաբորատորիաներից դեպի արտադրամասեր տանող ճանապարհը, բարձրացնեն գիտահետազոտական աշխատանքների արդյունավետությունը, առանձնահատուկ կարևորություն նվիրեն գիտատեխնիկական առաջադիմության պրոբլեմներին:

Սովետական ժողովրդի բոլոր նվաճումները անխզելիորեն կապված են մեր կուսակցության քաղաքական և կազմակերպական անդուլ գործունեության հետ: Կուսակցության հոգատարության, նրա քաղաքական-դաստիարակչական աշխատանքի շնորհիվ սովետական մարդը այսօր դարձել է կոմունիստական բարոյականության բարձր հատկանիշների կրողը: Սովետական մարդկանց խորթ չէ ազգային հպարտության զգացումը, սակայն այն չի սահմանափակվում լոկ իր ազգի հանդեպ տածած սիրո և հպարտության շրջանակներում: Այդ զգացումն ավելի լայն է ու խոր, քանզի իր մեջ ամենից առաջ պարունակում է անսահման սեր և հպարտություն սովետական բոլոր մարդկանց ընդհանուր Հայրենիքի՝ բազմազգ սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ:

— Սովետական Հայաստանի անցած կեսդարյա ուղին,— պլենումին տրված իր զեկուցման մեջ ասաց ընկ. Քոչինյանը,— լավագույն կերպով ապացուցեց, որ մեր ժողովրդի, մեր ազգի իսկական ծաղկումն անհնար էր ձեռք բերել ազգային կաղապարի մեջ ինքնամփոփվելով և մեկուսանալով: Այլ կերպ ասած, մեր պատմական փորձը լիովի ապացուցեց նացիոնալիզմի գաղափարախոսության սնանկությունը: Հենվելով այդ կենսահաստատ պատմական փորձի վրա, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը միշտ էլ վճռական պայքար է մղել նացիոնալիզմի գաղափարախոսության դեմ, հավասարապես մերժելով թե՛ ազգային առանձնահատկությունների ուռճացումը, ազգային սնապարծությունը և թե՛ազգային նիհիլիզմը: Այսօր էլ նա աշխատավորներին դաստիարակում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակության ու պարծենկոտության դրսևորումների դեմ անհաշտվողականության ոգով, բոլոր ազգերի և ազգությունների նկատմամբ խորին հարգանքի ոգով: Ինչպես միշտ, ներկայումս էլ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը սկզբունքային գնահատական է տալիս և մերժում ազգային սնապարծության դրսևորումները, որոնք առանձին դեպքերում տեղ են գտնում մամուլի էջերում կամ բանավոր ելույթներում:

Այսօր էլ մեր կուսակցական կազմակերպությունների աշխատանքի կարեվորագույն խնդիրներից մեկը աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունն է: Թե՛ տնտեսական շինարարության լծակները, թե՛ գաղափարական աշխատանքի միջոցները, բանավոր ու գրավոր պրոպագանդան ի սպաս են դրվում ինտերնացիոնալ դաստիարակության նպատակին:

Սովետական Հայաստանի աշխատավորները, հավատարիմ ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության սկզբունքներին, սովետական ժողովուրդների բազմազգ ընտանիքում, սերտորեն համախմբված հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը, փառապանծ հոբելյանը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակը կդիմավորեն կոմունիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած նորանոր նվաճումներով:



# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Գ. Ա. ՌՈԴԻՈՆՈՎ

## ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Լենինյան մեթոդոլոգիայի խոր ու համակողմանի վերլուծության և պատ-
մական նոր փորձի, ժամանակակից պրոցեսների ու երևույթների տեսական
ընդհանրացման հիման վրա XXIV համագումարը մարքսիզմ-լենինիզմը, ինչ-
պես և կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքը հարստացրեց նոր,
կարևոր հետևություններով ու դրույթներով: Խոսքը վերաբերում է, ամենից
առաջ, այնպիսի առաջնահերթ նշանակություն ունեցող պրոբլեմներին, ինչպի-
սիք են՝ կոմունիստական շինարարության ասպարեզում կուսակցության ղեկա-
վար դերի, ՍՄԿԿ գաղափարա-տեսական գործունեության մակարդակի բարձ-
րացումը, արդիականության պահանջներին համապատասխան կուսակցական
աշխատանքի և ղեկավարման ձևերի ու մեթոդների կատարելագործումը, ներ-
կուսակցական դեմոկրատիայի համակողմանի զարգացումը և կուսակցական
կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ստեղծագործական ակտիվու-
թյան բարձրացումը, կադրային քաղաքականության, կոմունիստների մարքս-
լենինյան ուսուցման կատարելագործումը:

Համագումարը առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կոմունիստական
շինարարության գործում կուսակցության ղեկավար դերի բարձրացման պրոբ-
լեմին: Եվ այդ միանգամայն օրինաչափ է: Նախ՝ ղեկավար դերի վերաբերյալ
հարցը, ինչպես նշվեց համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զե-
կուցման մեջ, հեղափոխական շարժման, նոր հասարակության կառուցման
արմատական հարցերից մեկն է: Կուսակցության ղեկավար դերի բարձրացումը
սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության կարևորագույն օրինաչափու-
թյունն է: Երկրորդ, այդ հարցն այժմ դարձել է մարքսիստ-լենինյանների և
ռևիզիոնիզմի ներկայացուցիչների միջև մղվող պայքարի հանգուցակետը:

Ահա թե ինչու, ինչպես հիշատակվեց XXIV համագումարում, հաշվետու
ժամանակաշրջանում կուսակցության մշտական ու մեծ մտահոգության առար-
կա է եղել կոմունիստական կուսակցության ղեկավար դերի վերբերյալ լենին-
յան ուսմունքի հետագա զարգացումը: Այդ են վկայում, առաջին հերթին, կու-
սակցության փաստաթղթերը՝ նվիրված սովետական պետության 50-ամյակին,



Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին, որոնք հանդիսանում են, ամբողջու-
թյամբ վերցրած, կուսակցության տեսական մտքի շատ կարևոր հանրագումա-
րը, Կենտրոնական կոմիտեի, մեր կուսակցության ու գիտական կադրերի կո-
լեկտիվ աշխատանքի արդյունքը: Նման հոգատարության համոզիչ ապացույցն
են բուն XXIV համագումարի և՛ փաստաթղթերը, և՛ նյութերը: Արմատական
այդ հարցի նկատմամբ ՍՄԿԿ սկզբունքային դիրքորոշումները, նրա անհաշ-
տելի պայքարը կուսակցության վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքի անա-
ղարտության, նրա ղեկավար դերի համար ունեն միջազգային նշանակություն,
նպաստում են, ինչպես այդ վկայում են բովանդակ աշխարհի կոմունիստները,
միլիոնավոր աշխատավորների ճիշտ կողմնորոշմանը:

Եթե փորձենք լենինյան ուսմունքի հիման վրա սեղմ, առավել համառոտ
ձևակերպել, թե ինչով է պայմանավորված մարքս-լենինյան կուսակցության
ղեկավար դերը սոցիալիստական հասարակարգում, ապա, հավանաբար, կա-
րելի կլինի նախանշել չորս հիմնական հանգամանք: Այդ դերը պայմանավոր-
ված է, նախ՝ նրանով, որ բանվոր դասակարգը, որի ավանգարդն է կուսակ-
ցությունը, առաջատար դիրք է գրավում սոցիալիստական արտադրության և
հասարակական հարաբերությունների սիստեմում. երկրորդ, կուսակցությունն
իր շարքերում միավորում է բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելի-
գենցիայի լավագույն ներկայացուցիչներին. երրորդ, հենց կուսակցությունն է,
զինված մարքս-լենինյան առաջավոր տեսությամբ, ժողովրդի առջև բացում
առաջշարժման ճիշտ ուղիները. չորրորդ, կուսակցությունը քաղաքական, կազ-
մակերպական և դաստիարակչական աշխատանքի անհամեմատ մեծ փորձ
ունի, քան յուրաքանչյուր այլ կազմակերպություն: Այս ամենը հնարավորու-
թյուն է ընձեռում կուսակցությանը՝ հրահրելու մասսաների վիթխարի էներ-
գիան ու ստեղծագործական նախաձեռնությունը ու դրանք դնելու ճիշտ հունի
մեջ, ապահովելու կոմունիստական շինարարության կազմակերպված, պլանա-
վորված, գիտականորեն հիմնավորված ողջ պրոցեսը:

Չի եղել ու չկա քաղաքական մի այլ ուժ, բացի կոմունիստական կու-
սակցությունից, որն ունակ լինի այդպիսի լիակատարությամբ ու հետևողա-
կանությամբ հաշվի առնելու, զուգակցելու և կոորդինացնելու ողջ սոցիալիս-
տական հասարակության շահերը: Ընդ որում, կուսակցությունն իր ղեկավար
դերը բռնությամբ չի նվաճում, չի պարտադրում ժողովրդին, այլ այն նվաճում
է իր ճիշտ քաղաքականությամբ, աշխատավորների արմատական շահերի հա-
մար երկարատև ու համառ պայքարով, որի ընթացքում նա մասսաների շրջա-
նում ձեռք է բերում բարոյա-քաղաքական մեծ հեղինակություն: Կուսակցական
աշխատանքի մեթոդները խոր դեմոկրատական են: Նա գործում է համոզմունք-
ների օգնությամբ, գաղափարա-քաղաքական ազդեցությամբ՝ կիրառելով կազ-
մակերպական գործունեության խիստ բազմազան ձևեր:

Վ. Ի. Լենինը համոզիչ կերպով հիմնավորեց, որ սոցիալիզմի և կոմու-
նիզմի կառուցումը վերընթաց գծով հետևողականորեն զարգացող պրոցես է,
որ կոմունիզմի առաջընթացին զուգընթաց ընդլայնվում են ստեղծարար գոր-
ծունեության մասշտաբները, բարդանում բուն խնդիրները, գիտակցական-
պատմական ստեղծագործության են ներգրավում ավելի ու ավելի ժողովրդա-
կան լայն զանգվածների: Իսկ այդ, իր հերթին, օբյեկտիվորեն հանգեցնում է
կուսակցության դերի բարձրացմանը: «...որքան ավելի խոր է բարեփոխու-
թյունը,— մատնանշել է Վ. Ի. Լենինը,— որ մենք ուզում ենք իրագործել,
այնքան ավելի շատ հետաքրքրություն ու գիտակցական վերաբերմունք է պետք
առաջ բերել դեպի այն, նորանոր միլիոնների և տասնյակ միլիոնների համո-
զել նրա անհրաժեշտության մեջ» (Երկեր, հ. 31, էջ 630):

Լենինյան ուսմունքը կուսակցության վերաբերյալ, իրավի, միջազգային
անգնահատելի նշանակություն ունի: Բոլշևիզմը, Վլադիմիր Իլյիչի արտահայ-
տությամբ, համաշխարհային երևույթ է դարձել: Կոմունիստական ու բանվո-
րական կուսակցություններն իրենց սեփական փորձով համոզվեցին ինչպես
ամբողջությամբ վերցրած, լենինիզմի, այնպես և կուսակցության վերաբերյալ
լենինյան ուսմունքի կուսակցական շինարարության սկզբունքների պատմա-

կան վիթխարի նշանակության և համակողմանիության մեջ: «Կուսակցության՝ որպես հեղափոխական մասսաների առաջնորդի, որպես նոր հասարակարգի ղեկավար ուժի վերաբերյալ լենինյան գաղափարները, կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները, որոնք ստուգված և հաստատված են ՍՄԿԿ փորձով,— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում արտասանած ճառում,— ներկայումս ո՛չ միայն ՍՄԿԿ, այլև եղբայրական կոմունիստական կուսակցությունների սեփականությունն են: Փաստերը վկայում են, որ կոմունիստները հաղթում են այնտեղ, որտեղ կուսակցությունը հետևողականորեն կատարում է բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ավանգարդի իր դերը, որտեղ ճշտորեն են կիրառվում կուսակցական կյանքի լենինյան նորմերը, որտեղ կուսակցությունը պահպանում և անդուլ կերպով ամրապնդում է իր քաղաքական, կազմակերպական ու գաղափարական միասնությունը: Եվ, ընդհակառակը, կուսակցության դերի ամեն մի նսեմացում, կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներից կատարվող նահանջ, հանգեցնում են լուրջ անհաջողությունների և կարող են սպառնալիք ստեղծել ժողովուրդների սոցիալիստական նվաճումների համար» (*Լենինյան կուրսով*, հ. 2, 1970, էջ 790—791):

Կուսակցության ղեկավար դերի հարցը ամենևին էլ զուտ տեսական չէ: Այդ կարևորագույն պրոբլեմ է, որն ունի քաղաքական ու պրակտիկ առաջնակարգ նշանակություն: Իսկական մարքսիստ-լենինյանները չեն կարող անտարբեր մնալ կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի խեղաթյուրման, կուսակցության ղեկավար դերի թուլացման ամեն մի փորձի հանդեպ, քանի որ այդ փորձերը որոշ դեպքերում վերածվում են հակասոցիալիստական տարրերի սանձազերծման, կապիտալիստական հասարակարգի վերականգնման սպառնալիքի: Վերջերս տեղի ունեցած մի շարք իրադարձություններ նշված պրոբլեմների յուրահատուկ այժմեականության ակնառու վավերացումն են: Նկատի ունենալով այդ իրադարձությունները և «սոցիալիզմը բարելավելու», կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները «մոդիֆիկացնելու» պատրվակի տակ մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական էությունն ամլացնելու, բուրժուական գաղափարախոսության, հակահեղափոխության ներթափանցման համար ուղի հարթելու ռևիզիոնիստների փորձերը՝ XXIV համագումարն առանձին ուժով ընդգծեց, թե որքան կարևոր են սոցիալիստական հասարակարգում կուսակցության ղեկավար դերի մշտապես ամրապնդումը, կուսակցական ղեկավար ձևերի ու մեթոդների անընդհատ կատարելագործումը, մարքս-լենինյան ստեղծագործական մոտեցման դրսևորումը՝ սոցիալիզմի հասունացած պրոբլեմները լուծելիս:

* * *

Կոմունիստական կուսակցությունը սովետական հասարակության միասնության մարմնավորումն է: Դրա հարաճուն դերը հատկապես զարգացած հասուն սոցիալիստական հասարակարգի պայմաններում պայմանավորված է բոլոր դասակարգերի ու սոցիալական խավերի, ողջ ժողովրդի, բոլոր ազգերի ու ազգությունների, մեր հասարակության բոլոր սերունդների շահերը առավել լիովին հաշվի առնելու և զուգակցելու պահանջներով: Համագումարի փաստաթղթերը բովանդակում են սկզբունքային կարևորություն ունեցող հետևություն այն մասին, որ արդի պայմաններում կուսակցությունից համառորեն պահանջվում է կոմպլեքսային գիտական մոտեցում ցուցաբերել հասարակության՝ որպես հասարակական-տնտեսական ամբողջական օրգանիզմի, զարգացմանը: Հենց նման մոտեցում են թելադրում կոմունիստական շինարարության բացառիկ բարդ խնդիրները, դրանց սերտ օրգանական փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը, դրանց լուծումները մշտապես կոորդինացնելու անհրաժեշտությունը տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու, եղած բոլոր հնարավորություններն ու ռեզերվներն առավելագույն չափով օգտագործելու նպատակով:



Կյանքն ինքն այժմ կոմունիստական կուսակցությանն առաջադրում է
այնպիսի նոր ու բարդ խնդիրներ, որոնք նախկինում չկային, իսկ եթե կային
էլ, ապա ոչ մեր օրերի ծավալով: Ինչպես ավելի լավ միացնել սոցիալիստա-
կան հասարակարգի առավելությունները գիտա-տեխնիկական հեղափոխու-
թյան նորագույն նվաճումներին, դրա հիման վրա ինչպես ապահովել ողջ
ժողովրդական տնտեսության բարձր արդյունավետությունը, պլանաչափ և
համամասնական զարգացումը, ժողովրդի կզալի, մինչև այժմ չտեսնված բա-
րեկեցությունը. ինչպիսի մեթոդներով լայնորեն զարգացնել ու խորացնել կո-
մունիստական ոգով մարդկանց գիտակցության ձևավորման աշխատանքը.
ինչպիսի ուղիներով առաջ ընթանալ սոցիալիստական դեմոկրատիայի ստեղ-
ծագործական զարգացման պայմաններում:

Սոցիալիստական արտադրության վիթխարի աճը, մեր էկոնոմիկայի որա-
կական մեծ տեղաշարժերը, ժողովրդական վիթխարի տնտեսության կառավար-
ման պրոբլեմների արտակարգ բարդացումը, հասարակության սոցիալ-քաղա-
քական զարգացման ավելի ու ավելի բարդ խնդիրները, արտաքին պայման-
ների լուրջ փոփոխությունները, այդ թվում՝ սոցիալիստական երկրների համա-
կողմանի համագործակցության խորացումն ու ամրապնդումը, նրանց տնտե-
սական ինտեգրացիայի ընդլայնումը, տնտեսական և գիտա-տեխնիկական
զարգացման ոլորտում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող դասակար-
գային պայքարի կզալի սրումը— այս ամենը կոմունիստական շինարարության
արդի փուլի այնպիսի առանձնահատկություններ են, որոնք պահանջում են
կուսակցությունից գիտական խոր, կոմպլեքսային մոտեցում հասարակության
ղեկավարմանը, կազմակերպական և քաղաքական ղեկավարման մակարդակի
հետագա բարձրացում, այդ ղեկավարման ձևերի ու մեթոդների համակողմանի
կատարելագործում: Անտարակույս, կուսակցությունը միշտ ձգտել է կոմպլեք-
սայնորեն և հետևողականորեն լուծել հասարակական զարգացման խնդիրնե-
րը: Սակայն միայն այժմ հասուն, զարգացած սոցիալիստական հասարակու-
թյան պայմաններում են ստեղծվել նախադրյալներ ու հնարավորություններ
այդպիսի կոմպլեքսային մոտեցման լիովին իրականացման համար:

Մեր ժամանակներում անսահմանորեն ընդլայնվել են կուսակցության
ղեկավար դերի իրականացման հնարավորությունները: Այդ կապակցությամբ
հարկ է, առաջին, ընդգծել, որ գիտությունը ներթափանցել է մեր կյանքի մեջ,
նրա բոլոր ոլորտները: Երկրորդ, կուսակցությունը կուտակել է հասարակական
զարգացման բարդ, բազմատեսակ պրոցեսների ղեկավարման հարուստ փորձ,
և, բացի այդ, հնարավորություն ունի օգտագործելու սոցիալիստական երկրնե-
րի եղբայրական կուսակցությունների փորձը: Երրորդ, աճել են կուսակցության
և պետության կադրերը: Չորրորդ, սովետական մարդկանց սոցիալիստական
գիտակցականության կզալի աճը ծնունդ տվեց աշխատավորական լայն զանգ-
վածների մինչև այժմ չտեսնված չափերի հասնող գիտակցական ստեղծագոր-
ծական նախաձեռնությանը:

Կուսակցության ողջ գործունեության հաջողությունը մեծ չափով, ըստ
էության, վճռականորեն որոշվում է բուն կուսակցության վիճակով, նրա ներ-
քին կյանքի կազմակերպմամբ: Այն բանից, որ ՍՄԿԿ ղեկավար դերի բարձ-
րացումը օրինաչափ պրոցես է, ամենևին չի բխում, թե այդ պրոցեսը կարող է
զարգանալ ինքնին, ինքնահոս կերպով, առանց կուսակցության բոլոր ստեղ-
ծագործական ուժերը գործողության մեջ դնելու: ՍՄԿԿ, որպես սովետական հա-
սարակության ղեկավար և ուղղություն տվող ուժ, պետք է առջևից ընթանա
նաև իր ներքին կյանքը կազմակերպելիս, լինի կազմակերպական առավել կա-
տարելագործված ձևերի ու աշխատանքի մեթոդների մշակման օրինակ ու տի-
պար: Այդ նկատի ունենալով՝ կուսակցությունը մշտապես հոգում է իր կազ-
մակերպական ղեկավարման, կուսակցական աշխատանքի ոճի ու մեթոդների
կատարելագործման մասին, իր շարքերի ամրապնդման մասին, որպեսզի ան-
շեղորեն պահպանվեն կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներն ու նոր-
մերը, բարձրանա կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը,
որպեսզի ներկուսակցական կյանքը, որը, վերջին հաշվով, իսկական հետա-

դարձ ներգործություն է ունենում հասարակության ողջ կյանքի վրա, լիովին համապատասխանի ժամանակի պահանջներին ու ոգուն, կոմունիստական շինարարության բարդ խնդիրներին: Այդպիսի հոգատարության վառ դրսևորումն է ՍՄԿԿ XXIV համագումարի ողջ ընթացքը, նրա փաստաթղթերն ու նյութերը: Համագումարը որոշեց կուսակցական շինարարության բնագավառի պարզ ու հստակ ուղին: *Այդ ուղին հասարակության կուսակցական ղեկավարման մեթոդների կատարելագործումն է, կուսակցական կյանքի լենինյան նորմերի խիստ պահպանումը, մեր կուսակցության շարքերի հետագա համախմբումը, բանվոր դասակարգի, սովետական ողջ ժողովրդի հետ կուսակցության կապերի համակողմանի ամրապնդումը:*

Կուսակցության XXIV համագումարում լիովին դրսևորվեց նրա քաղաքական, կազմակերպական, ներկուսակցական աշխատանքի հարուստ փորձը: Խիստ կարևոր է, որ այդ փորձը, մեր շատ արժեքավոր առավելությունը, հաջողությամբ ընդհանրացվել է համագումարի փաստաթղթերում ու նյութերում և այդ ընդհանրացումների հիման վրա արվել են անհրաժեշտ հետևություններ:

Վերջին տարիներին հատկապես հետևողականորեն ու համառորեն իրականացվեց կուսակցության շարքերի աճը կարգավորող ներգործությունը, ընդ որում, գլխավոր ուշադրությունը նվիրվեց այն բանին, *որպեսզի կուսակցության սոցիալական կազմում առաջատար տեղը պատկանի բանվոր դասակարգին:* Այդ գծի իրականացմամբ, ներկուսակցական այս կարևորագույն գործին կուսակցական կազմակերպությունների առավել ուշադիր մոտեցմամբ, ՍՄԿԿ շարքերն ընդունվողների հանդեպ պահանջկոտության բարձրացմամբ վերջին տարիներին կուսակցության մեջ ընդունվողների թիվը փոքր-ինչ կրճատվեց, բայց դրա փոխարեն բարելավվեց նրանց որակական կազմը: Այստեղ կարևոր նշանակություն ունի ընդունվածների մեջ բանվորների թվի ավելացման կայուն տենդենցը:

Նման տենդենցը համապատասխանում է մեր կուսակցության բնույթին, կուսակցություն, որը սովետական հասարակության միասնության սոցիալ-քաղաքական պայմաններում թեև դարձել է ողջ ժողովրդի ավանգարդը, այնուամենայնիվ, շարունակում է մնալ բանվոր դասակարգի կուսակցություն ինչպես իր իդեալներով, նպատակներով ու խնդիրներով, այնպես և իր դասակարգային էությամբ: Դա համապատասխանում է մեր հասարակության մեջ բանվոր դասակարգի՝ որպես կոմունիստական շինարարության գլխավոր ուժի տեղին ու դերին: XXIV համագումարի փաստաթղթերում տրված է սոցիալիզմի ամրապնդման և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման բնագավառում բանվոր դասակարգի առաջատար դերի բարձրացման գիտական հիմնավորումը: Այդ բարձրացումը որոշվում է սոցիալիստական արտադրության սիստեմում, արտադրահարաբերություններում բանվոր դասակարգի նշանակության մեծացմամբ, նրա բնորոշ գծերով՝ հեղափոխականությամբ, կարգապահությամբ, կազմակերպվածությամբ, գիտակցականությամբ: Բանվոր դասակարգն է հենց գիտական սոցիալիզմի դրոշակակիրը, նա է ունակ կոմունիստական իդեալների հիման վրա իր շուրջը միավորելու ժողովրդական լայն զանգվածներին:

ՍՄԿԿ շարքերն ընդունվողների հանդեպ պահանջկոտության մեծացումը, անհատական ընտրության սկզբունքի առավել խիստ պահպանումը կուսակցությունը դիտում է որպես կուսշինարարության լենինյան կարևորագույն սկզբունքներից մեկի իրագործում, որը պահանջում է լինել հաստատակամ, սկզբունքային, պահպանել կուսակցության շարքերի անաղարտությունը, ավելի ու ավելի բարձրացնել կուսակցության անդամի կոչումը, չընկնել քանակի ետևից, այլ անընդհատ բարելավել կուսակցության շարքերն ընդունվողների որակական կազմը: ՍՄԿԿ մեծ հեղինակությունը, հասարակության կյանքում նրա մշտապես բարձրացող դերը պայմանավորում են կուսակցության շարքերն ընդունվողների հանդեպ առավել մեծ պահանջներ:

Կուսակցական շարքերի ընդունելության աշխատանքի բարելավման նոր փորձը, որ կուտակել էին կուսակցական կազմակերպությունները XXIII և



XXIV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում, մեծ նշանակություն ունի, քանի որ կուսակցական շարքերի կազմից, ինչպես և նոր սերնդից է, առավել քան երբևէ, կախված կուսակցության ղեկավար դերի, մարտունակության ու հեղինակության հետագա բարձրացումը:

XXIV համագումարի նյութերն ու որոշումները բովանդակում են *կուսակցության սոցիալական կազմում հետայսու ևս բանվոր դասակարգի առաջատար տեղի ապահովման, կուսակցության շարքերն ընդունվողների հանդեպ պահանջկոտության հետագա համակողմանի բարձրացման դրույթը*, այնպես, որ ՍՄԿԿ կազմը հնարավորություն ընձեռի կուսակցությանը՝ լավագույն ձևով լուծելու իր առջև ծառացած խնդիրները:

ՍՄԿԿ XXIV համագումարը բացառիկ մեծ ուշադրություն նվիրեց *ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման* հարցերին: Եվ դա միանգամայն օրինաչափ է, քանի որ դեմոկրատիզմը, որը բնորոշ է կուսակցությանը նրա գոյության ու զարգացման բոլոր փուլերում, արդի պայմաններում ձեռք է բերել յուրահատուկ, առաջնակարգ նշանակություն: Այդ նշանակությունը որոշվում է, ամենից առաջ, նրանով, որ, սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի զարգացման պայմաններում, արտադրության, պետական և հասարակական գործերի կառավարման ոլորտը միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց ներգրավմամբ առանձնակի սրությամբ է ծառանում կուսակցության կյանքում դեմոկրատական սկզբունքների անընդհատ և հետևողական ընդլայնման, կուսակցության քաղաքականության, ստրատեգիայի ու տակտիկայի մշակման ու կենսագործման ասպարեզում կոմունիստների ակտիվության հետագա բարձրացման, կուսակցության բոլոր գործերին կուսակցական լայն զանգվածների ստեղծագործական մասնակցության ապահովման խնդիրը:

Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի կատարելագործումը, մասսաների ստեղծագործական ակտիվության հետագա զարգացումը, պետական ու հասարակական կառավարմանը նրանց մասնակցության ընդլայնումը համագումարը բնորոշեց որպես դեպի կոմունիզմ սովետական հասարակության շարժման քաղաքական գլխավոր ուղի: Բայց այդ ամենը հնարավոր է լոկ բուն կուսակցության, նրա բոլոր օղակներում ու կազմակերպություններում լայն ու համակողմանի դեմոկրատիզմի առկայության պայմանով միայն: Ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը նպաստում է մասսաների հետ կուսակցության կապի ընդլայնմանը, նրանց ստեղծագործական էներգիայի նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացմանը, կուսակցության հեղինակության բարձրացմանը՝ որպես հասարակական-քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևի, սոցիալիստական հասարակության ղեկավարող և ուղղություն տվող ուժի, որպես սովետական ժողովրդի ավանգարդի: Ահա թե ինչու, ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ, կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն անցած տարիներին անշեղորեն վարում էին ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացման, կուսակցական կյանքի լենինյան նորմերի պահպանման, կոմունիստների ակտիվության բարձրացման կուրս:

Կուսակցության մեջ հետևողականորեն իրագործվում է կուսակցական մարմինների ընտրովիության և հաշվետու լինելու սկզբունքը: Դա դեմոկրատիայի համոզիչ ու վառ արտահայտությունն է, քանի որ դեմոկրատիզմը, մատնանշել է Լենինը, ընտրական սկզբունքի ընդհանուր կիրառումն է (տե՛ս Երկեր, հ. 8, էջ 60) :

Կուսակցության ներսում ամրապնդվել է կոլեկտիվ ղեկավարման ոգին, որն իր արտահայտությունն է գտնում կենտրոնում և տեղերում կուսակցական կոլեկտիվ օրգանների դերի բարձրացման մեջ: Ներքին և արտաքին ողջ քաղաքականության, կուսակցության ողջ գործունեության հարցերը քննարկվում ու որոշվում են լայն դեմոկրատական հիմունքներով: Ներկուսակցական դեմոկրատիայի սկզբունքների, կոլեկտիվ ղեկավարման, հետևողական ու անսա-

ման իրագործման փայլուն օրինակ է, ամենից առաջ, ՍՄԿԿ Կենտկոմի գոր-
**ծունեությունը:**

XXIV համագումարի շատ պատգամավորներ, իրենց ելույթներում հատկա-
պես ընդգծեցին, որ ՍՄԿԿ Կենտկոմի ու նրա օրգանների ղեկավարման ոճին
ու մեթոդներին բնորոշ են գիտական մոտեցումը կոմունիստական շինարա-
րության պրոբլեմների հանդեպ, կոլեկտիվ ձեռներեցությունը աշխատանքում,
խոր ներթափանցումը գործի կոնկրետ էության մեջ, ժամանակին օգնություն
ցույց տալու հմտությունը այս կամ այն կուսակցական կազմակերպությանը՝
նրա առջև ծառացած խնդիրների լուծման, առաջացած դժվարությունների
հաղթահարման ասպարեզում: Այդ առումով բերկրալի փոփոխություններ են
տեղի ունեցել նաև տեղերում: Խոսքը ո՛չ միայն պլենումների, կուսակցական
կոմիտեների բյուրոների, կուսակցական ակտիվի և սկզբնական կուսակցական
կազմակերպությունների ժողովների կանոնավոր հրավիրմանն է վերաբերում,
այլև տեղական կուսակցական օրգանների պրակտիկ գործունեության բովան-
դակության ու արդյունավետության զգալի հարստացմանը:

Չի կարելի չխոսել նաև այն մասին, որ ՍՄԿԿ XXIV համագումարն իսկ
կուսակցական ղեկավարման կոլեկտիվության սկզբունքի, կուսակցական կյան-
քի լենինյան նորմերի մարմնավորման վառ օրինակ էր: Դրա վկայությունն
է և՛ համագումարի պատգամավորների կազմը, և՛ նրանց մեծ ակտիվությու-
նը, և՛ համագումարի ամբողջ ոգին ու բնույթը: Պատգամավորների կազմում
լայնորեն ներկայացված էր բանվոր դասակարգը (ամբողջ կազմի գրեթե չոր-
րորդ մասը): Բանվորներ ու մինիստրներ, կոլտնտեսականներ ու գիտնական-
ներ, զինվորականներ ու կուլտուրայի գործիչներ, կուսակցության վետերան-
ներ ու կոմունիզմի երիտասարդ կառուցողներ, ժողովրդական տնտեսության
բոլոր ճյուղերի, հասարակական կյանքի բոլոր ոլորտների ներկայացուցիչներ—
համագումարի այդպիսի կազմը մարմնավորում էր կուսակցության կոլեկտիվ
իմաստությունը, նրա կամքն ու էներգիան, սերունդների հաջորդականությու-
նը, կուսակցության հավատարմությունը լենինյան հեղափոխական ավան-
դույթներին: Համագումարի ողջ աշխատանքը բնորոշում էր միասնության,
դեմոկրատականության, խիստ գործարարության ու սկզբունքայնության մըթ-
նոլորտը:

Համագումարի պատգամավորների ակտիվության մասին կարելի է դատել
երկու պերճախոս թվերով: Մտքերի փոխանակությանը մասնակցելու համար
ցուցակագրվել էր 267 մարդ, ելույթ ունեցավ՝ 60-ը: Բայց հարցը ո՛չ միայն և
ո՛չ այնքան դրանում է: Պատգամավորների ելույթները,— բանվորի թե կոլ-
տնտեսականի, նշանավոր գիտնականի թե կուլտուրայի գործչի, կուսակցական
կամ պետական աշխատողի,— աչքի էին ընկնում պրակտիկայի, կյանքի լուրջ
վերլուծությամբ, խոր մտորումներով մեր առաջշարժման հեռանկարների և
այն մասին, թե ինչպես ավելի լավ, հաջող վարել գործը՝ հանուն կոմունիստա-
կան ստեղծարար վիթխարի ծրագրի իրականացման: Արժեքավոր շատ առաջար-
կություններ արվեցին էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի, սովետական
ժողովրդի աշխատանքի ու կենցաղի, տնտեսավարման մեթոդների, կուսակցա-
կան-կազմակերպական և գաղափարական-քաղաքական աշխատանքի կատա-
րելագործման հարցերի վերաբերյալ: Ներկայումս այդ առաջարկություններից
շատերն արդեն կենսագործվել են, իսկ մյուսները, որ շատ ժամանակ են պա-
հանջում, իրականացվում են:

Հարկ է ընդգծել նաև, որ համագումարում տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկո-
մի, նրա գործադիր օրգանների կազմի մեծացում, որն արդեն ինքնըստինքյան
ընդլայնում է մեր կուսակցության լենինյան շտաբի գործունեության կոլեկ-
տիվության շրջանակները:

ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, համագումարի որոշումնե-
րում միջոցներ են նշված, որոնց իրականացմամբ կապահովվի կոլեկտիվու-
թյան հիմունքների հետագա ընդլայնումը, դեմոկրատիզմի համակողմանի
զարգացումը կուսակցության կյանքի և գործունեության մեջ:

Համագումարն ընդգծեց, որ ամեն մի կուսակցական կազմակերպություն



պետք է ապահովի բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությունը որոշում-
ների քննարկմանը, մշակմանը և իրականացմանը, *զարգացնի սկզբունքային
քննադատությունն ու ինքնաքննադատությունը*՝ որպես թերություններն ուղ-
ղելու և գործերը կարգավորելու փորձված մեթոդ: Դեմոկրատիզմի պարտադիր,
հիմնական ցուցանիշը հանդիսացող կուսակցական աշխատանքի հրապարա-
կայնության զարգացմանն է ուղղված համագումարի ցուցումը *ներկուսակցա-
կան ինֆորմացիան* հետայսու ևս բարելավելու, այն որպես ղեկավարման կա-
րևոր գործիք, դաստիարակման ու վերահսկման միջոց լիովին օգտագործելու
վերաբերյալ: Այդպես նորովի, առավել լիովին ու խորությամբ է սահմանվում
ներկուսակցական ինֆորմացիայի նշանակությունը: Եվ, իրոք, ինֆորմացիայի
լավ դրվածքը, ինչպես սովորեցնում է պրակտիկան, օգնում է ճիշտ կողմնո-
րոշվելու իրադրության մեջ, լիովին հաշվի առնելու կուսակցական կազմակեր-
պությունների, աշխատավորության լայն զանգվածների կարծիքն ու փորձը
որևէ կարևոր հարց լուծելիս, և ինքն իր հերթին նպաստում այս կամ այն
խնդրի հաջող լուծմանը: Ուստի և այդ իմաստով այն երևան է գալիս որպես
կառավարման գործիք: Կուսակցության գործունեության, երկրի ներքին և միջ-
ազգային դրության կարևորագույն հարցերի, տնտեսական և կուլտուրական շի-
նարարության այժմեական, հրատապ պրոբլեմների վերաբերյալ կոմունիստ-
ներին ժամանակին տրված ինֆորմացիան ընդլայնում է նրանց մտահորի-
զոնը, լավատեղյակ դարձնում հասարակական կյանքին և իր այդ հատկու-
թյամբ ծառայում որպես դաստիարակության գործիք: Կուսակցության որոշում-
ների կատարման, նրա ղեկավար օրգանների այս կամ այն հարցի վերաբերյալ
կանոնավոր ու լիարժեք ինֆորմացիան ներքևից վերև, ընդհուպ մինչև Կենտ-
կոմ, վերահսկողության պարտադիր ու գործարար միջոց է:



* * *

Շեշտն առանձնապես դնելով ներկուսակցական կյանքում դեմոկրատա-
կան սկզբունքների ընդլայնման վրա, որն արտահայտում է ՍՄԿԿ զարգաց-
ման արդի փուլի օբյեկտիվ պահանջներն ու առանձնահատկությունները, կու-
սակցությունը կազմակերպության և, ամբողջովին վերցրած, կուսակցության
իրավիճակի բարելավման նպատակով, այդ խնդիրն օրգանապես կապում է
կուսակցական կարգապահության հետագա ամրապնդման, կոմունիստների
պատասխանատվության բարձրացման հետ: Դրանում է իր կոնկրետ արտա-
հայտությունը գտնում ցենտրալիզմի և ներկուսակցական դեմոկրատիայի դիա-
լեկտիկան:

Այն լարված ուշադրությունը, որ արդի պայմաններում նվիրվում է ցենտ-
րալիզմի և դեմոկրատիայի ճիշտ փոխհարաբերությունների պրոբլեմին,
այսինքն՝ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի երկու կողմին, պայմա-
նավորված է մի շարք խիստ կարևոր պատճառներով ու հանգամանքներով և,
ամենից առաջ, կոմունիստական կուսակցության, որպես սովետական հասա-
րակության ղեկավարող և ուղղություն տվող ուժի, մեծացող դերով: Կոմունիս-
տական շինարարության ավելի ու ավելի բարդացող պրոցեսների ղեկավար-
ման ասպարեզում ՍՄԿԿ բեղմնավոր գործունեությունն անիմաստ է առանց
առավել կատարյալ ներկուսակցական դեմոկրատիայի և ցենտրալիզմի դիա-
լեկտիկական միասնության:

Այդ առումով հարկ է նկատել, որ մեր գրականության մեջ անբավարար
ուշադրություն է նվիրվում տվյալ պրոբլեմի տեսական մշակմանը: Մի շարք
աշխատություններ հավաստում են, որ դեմոկրատական ցենտրալիզմն ընդա-
մենը ներկուսակցական կյանքի նորմերից մեկն է: Ճիշտ է, նման պնդման
առանձին հեղինակներ վերապահություն են անում, թե, իբր, դա հիմնարար
նորմ է: Մեզ թվում է, որ այդ կարգի վերապահումները չեն ուղղում սխալ-
ները, որոնց էությունը կուսակցական շինարարության արմատական սկըզ-
բունքների, մանավանդ, դեմոկրատական ցենտրալիզմի ղեկավարման սկըզ-
բունքի ապօրինի նույնացումն է ներկուսակցական կյանքի նորմերի հետ:

կուսակցական շինարարության սկզբունքների և ներկուսակցական կյանքի
նորմերի միջև գոյություն ունի ամենասերտ օրգանական կապ: Այնուամենայ-
նիվ, դրանք ինքնուրույն գիտական կատեգորիաներ են: Կուսակցական շի-
նարարության սկզբունքներով են կանխորոշվում, պայմանավորվում ներկու-
սակցական կյանքի նորմերը, որոնց արմատավորումը կուսակցական կյանքում,
իր հերթին, ավելի ու ավելի մեծ հնարավորություններ է բացում կուսակցա-
կան շինարարության սկզբունքների կարգացման, կուսակցական գործունեու-
թյան ասպարեզում դրանց առավել լիակատար մարմնավորման համար:

Նման մոտեցումը կուսակցական շինարարության սկզբունքների և ներ-
կուսակցական կյանքի նորմերի փոխհարաբերության հանդեպ ամենևին չի
բացառում հայացքը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի նկատմամբ՝
որպես ժամանակի փորձություններով անցած և կուսակցության կանոնադրու-
թյամբ հաստատված ներկուսակցական կյանքի որոշակի նորմերի ամբողջու-
թյուն: Այստեղ մենք գործ ունենք դեմոկրատական ցենտրալիզմի՝ որպես ղե-
կավարող, որոշ առումով համակողմանի, կուսակցական շինարարության
սկզբունքի էության կոնկրետ դրսևորումների հետ: Խոսքը վերաբերում է նշ-
ված հասկացությունների առավել ճշգրիտ, խիստ գիտական սահմանման ան-
հրաժեշտությանը:

Այդ պրոբլեմն ունի նաև միջազգային ասպեկտ: Սոցիալիզմի և կապիտա-
լիզմի միջև մղվող քաղաքական ու գաղափարական աննախադեպ լարված
պայքարի, կուսակցության շինարարության լենինյան սկզբունքների և, ամե-
նից առաջ, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի վրա ո՛չ միայն բուր-
ժուական գաղափարախոսների, այլև աջ ու «ձախ» հոսանքի օպորտունիստնե-
րի ակներևորեն ուժեղացող հարձակումների պայմաններում ցենտրալիզմի և
կուսակցական դեմոկրատիայի օրգանական միասնության պրոբլեմն ստանում
է խիստ այժմեական հնչեղություն:

Արդի ռևիզիոնիստները, ռենեգատները, հենվելով պատմական նոր պայ-
մանների յուրահատկության վրա, պահանջում են փոխել կուսակցական կազ-
մակերպության ձևը, վերանայել նրա սկզբունքները: Նույնացնելով դեմոկրա-
տական ցենտրալիզմը բյուրոկրատիզմի հետ, ինչպես այդ իր ժամանակին մեկ
մոտ անում էին տրոցկիստները, դեցիստները և մյուս օպոզիցիոներներն ու
պառակտիչները, նրանք ծավալվում են կոմունիստական կուսակցությունների
դեմոկրատացման անհրաժեշտության հաշվին, բացարձականացնում այդ
հասկացությունը, անտեսում ցենտրալիզմի նշանակությունը: Գարոդիի պնդ-
մամբ, օրինակ, ««դեմոկրատական ցենտրալիզմի» անվան տակ, լեգալ կու-
սակցություններից մեկի վկին էին փաթաթել... կազմակերպական ձևեր, որը
Լենինը մշակել էր ցարիզմի իշխանության դեմ մղվող անլեգալ պայքարի
պայմաններում» (տե՛ս „Der Spiegel„ № 20, 10 V. 1971, S. 114):

Նշված սկզբունքը, հայտարարում է Գարոդին, հանգեցնում է անհատա-
կան ակտիվության սահմանափակման, անտարբերության ու պասսիվության,
կուսակցության դեմոկրատական ոգու ճնշման ու վերացման (տե՛ս R. Ga-
r a u d y. Toute la vérite. Paris, 1970, p. 74) կամ, ինչպես ասում է Ֆիշերը,
«ավտորիտարության»: Ռևիզիոնիստները հանդես են գալիս հանուն փոքրա-
մասնության յուրահատուկ ստատուսի ստեղծման, չեն ենթարկվում մեծամաս-
նության կամքին, այլ խոսքով, պայքարում են հանուն օպոզիցիայի ազատու-
թյան: Ֆիշերն ու Մարեկը, օրինակ, բացեիբաց մարտնչում են ֆրակցիայի
ազատության համար, ֆրակցիայի արգելման վերաբերյալ մեր կուսակցության
X համագումարի որոշումը հայտարարելով «չարաբաստիկ» (տե՛ս E. F i s h e r,
F. M a r e k. Was Lenin wirklich sagte. Wien, 1969, S. 15):

Ռևիզիոնիստները չեն ընդունում կուսակցության խստագույն կարգապա-
հության պահանջը, որ նշանակում է գործով ժխտել կուսակցականությունը:
Նույն Մարեկը, օրինակ, իր *Ինչ էր Ստալինը իրականում ասում* գրքույկում
գրում է, որ Ստալինը «աստիճանաբար սկսեց հակվել միասնական կարգա-
պահության գաղափարին» F. Marek. Was Stalin wirklich sagte. Wien,
Molden, 1970, S. 95):



Այսպիսի շիտակությունը ոտքից գլուխ մերկացնում է այդ ռենեգա-
տին: Ամեն մի իսկական մարքսիստական կուսակցություն ելնում է և չի կա-
րող չելնել այն բանից, որ կարգապահությունը կուսակցության ներսում պետք
է լինի միասնական, հավասարապես պարտադիր բոլորի համար, անկախ այս
կամ այն կոմունիստի զբաղեցրած դիրքից: Բայց դա էլ հենց դուր չի գալիս
ռևիզիոնիստներին, ֆրակցիոներներին և պառակտիչներին:

Բավական է հիշել, թե ինչպես ՉԿԿ ռևիզիոնիստները ոտնահարում էին
կուսակցական կարգապահությունը, քննադատության մենաշնորհի իրավունք
վերապահելով իրենց, բառացիորեն անարգում և հալածում էին այլ կերպ մտա-
ծողներին: Նման դիրքորոշմամբ էլ Գարոդին փորձում էր հաստատվել Ֆրան-
սիայի կոմկուսակցությունում: Նա կոպիտ կերպով խախտում էր կուսակցական
կարգապահությունը, աղավաղում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը
ո՛չ միայն տեսության մեջ, այլև պրակտիկայում: Այդ ժամանակ «Յումանի-
տե» թերթը գրում էր. Շատ անդամներ և ամբողջ կուսակցական կազմակեր-
պություններ իրավացիորեն հետևյալ հարցն էին տալիս. «Ինչպե՞ս կարող է
Ռոժե Գարոդին կոմունիզմին ու իր կուսակցության գաղափարներին նվիրվա-
ծության վերաբերյալ հայտարարությունները զուգակցել կուսակցության համա-
գումարի որոշումների դիտավորյալ ու սիստեմատիկ խախտումների հետ: Կամ
նա որոշել է հրապարակորեն շարունակե՞լ կուսակցության, նրա քաղաքակա-
նության, նրա ղեկավարության դեմ ուղղված իր գործունեությունը»: Գարոդիի
հետագա գործելակերպը, ինչպես հայտնի է, սպառիչ պատասխան տվեց վեր-
ջին հարցին և այդ իսկ պատճառով ՖԿԿ Կենտկոմը ստիպված էր հարցը լուծել
մեկընդմիշտ:

Աջ ռևիզիոնիստները, Գարոդիի, Ֆիշերի տիպի ռենեգատներն ու նրանց
համախոհները լիովին միանում են բուրժուական գաղափարախոսներին, ֆալ-
սիֆիկատորներին և մարքսիզմ-լենինիզմը, ՍՄԿԿ պատմությունը, միջազգա-
յին կոմունիստական շարժումը խեղաթյուրողներին: Պատահական չէ, որ բուր-
ժուական պրոպագանդան վահանի վրա է բարձրացնում հիշյալ ռենեգատնե-
րին՝ ազդարարելով նրանց «ինքնուրույն դիրքեր» գրաված իսկական մարք-
սիստներ: Նրանցից ոմանք հայտարարում են, թե, իբր, թող մենք որոշ դեպ-
քերում սխալվենք, բայց որոնում ենք ժամանակի ոգուն համապատասխան
կուսկազմակերպության նոր ձևեր ու աշխատանքի մեթոդներ: Եվ այստեղ ակա-
մա հիշում ես իր ժամանակին ասված Լենինի հեգնական խոսքերը՝ ուղղված
աստվածաշինարարներին և աստվածորոնողներին: Երբ նրանք փորձում էին
ապացուցել իրենց հեռացումը մարքսիստական փիլիսոփայության սկզբունքնե-
րից նրանով, որ իբր, «որոնում են», Վլադիմիր Իլյիչը գրեց. «Ոչ թե *դուք* եք
որոնում, այլ ձեզ են *որոնում*...» (ПСС, т. 8, стр. 364): Այժմյան ռենեգատ-
ներին ևս որոնում և գտնում են իշխանություն ունեցողները, կոմունիզմի կա-
տաղի հակառակորդները:

Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները կոպիտ կերպով խեղաթյու-
րում են նաև «ձախ» հոսանքի ռևիզիոնիստները: Դա հատկապես ակնառու
կարելի է տեսնել մաոիստների տեսության ու պրակտիկայի օրինակում: Ցենտ-
րալիզմը բարձրացնելով բացարձակության աստիճանի, նեղ շրջանով բռնա-
տիրելով իշխանությունը՝ նրանք կուսակցության յուրօրինակ ռազմականացու-
մը հանգեցնում են, ավելի ճիշտ, հանգեցրին նրա կազմակերպական հիմունք-
ների վիժեցմանը, կուսակցությունը փոխարկեցին բյուրոկրատական կազմա-
կերպության, ուր կուսակցության անդամները կուրորեն կատարում են հրա-
մանները կամ «ի վերուստ ցուցումները», ուր բացառվում են մասսաների
նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը: Նման պայմաններում կու-
սակցությունը դադարում է գործել որպես քաղաքական, դեմոկրատական
կազմակերպություն:

IX համագումարում ընդունված ՉԿԿ կանոնադրությունը աղաղակող հա-
կասությունների մեջ է կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի հետ:
Այդ կապակցությամբ կցանկանայինք նշել, թե 1971 թ. հունիսի 30-ին «Ժեն-
մին ժիբաո», «Ցզեֆանցզյուն բաո» թերթերի և «Խունցի» ամսագրի խմբա-

գրությունների հրապարակած ՉԿԿ 50-ամյակին նվիրված հոդվածներում որքան տգեղ են երևում հեղինակների գործն այնպես ներկայացնելու փորձերը, թե, իբր, ՉԿԿ-ում, ցենտրալիզմի հետ մեկտեղ, գոյություն ունի նաև ներկուսակցական դեմոկրատիա, որ, իբր, Մաո Ցզե-դունը միշտ հանդես է գալիս ընդդեմ մոնոպոլիզմի, հանուն դեմոկրատիզմի: Հոդվածը բովանդակում է նաև «զարգացնել մեր կուսակցության տրադիցիոն դեմոկրատական ոճը, անշեղորեն վարել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, պաշտպանել ճշմարիտը և ուղղել սխալները» կոչը: Այն ինքնին լավ է: Բայց ո՞ւմ հայտնի չէ, որ դա, առնվազն, միայն բարի ցանկություն է, որ քննադատության աննշան փորձը և, մանավանդ, «ճշմարտության պաշտպանությունը» ՉԿԿ-ում խեղդվում են սաղմնային վիճակում և չափազանց թանկ են նստում նրանց վրա, ովքեր հանդգնում են այդպիսի քայլի դիմել: ՉԿԿ այժմյան կանոնադրությունը ծայրից ծայր ներծծված է անհատի պաշտամունքի գաղափարներով, այնտեղ, հակառակ հոդվածի հեղինակների պնդման, իրեն լիովին կգացնել է տալիս բուն բյուրոկրատական ցենտրալիզմը, դրա վերածումը բացարձակի:

1971 թ. օգոստոսի 27-ին «Ժենմին Ժիբաո» թերթում զետեղված է առաջնորդող հոդված: Այնտեղ ընդհանուր դատողություններից հետո, թե «կուլտուրական մեծ հեղափոխությունը՝ դա մեր պետության ներսում մեծ ու հույժ խոր շարժում է հանուն կուսակցության կարգավորման, որ «մեծ առաջնորդ նախագահ Մաո Ցզե-դունը կուսակցության կարգավորման ու շինարարության վերաբերյալ արած իր մի շարք կարևորագույն ցուցումներով կողմնորոշում է մեզ՝ խիստ հետևելու կուսակցական շինարարության մարքս-լենինյան սկզբունքներին», պարզաբանվում է, թե ինչպես է, իրոք, տեղի ունենում «կուսակցության կարգավորումն ու շինարարությունը»: Հոդվածում շեշտը դրված է այն բանի վրա, որ «կենտրոնացված ղեկավարությունը դա մաոցզեդունյան գաղափարներով ղեկավարելն է», որ տարբեր աստիճանների կուսակցական նոր կոմիտեներն իրենց ստեղծման օրից պետք է, ինչպես հարկն է, ուժեղացնեն կուսակցության կենտրոնացված ղեկավարությունը»:

Դյուրին է կռահել, թե ինչպիսի կենտրոնացված ղեկավարության մասին է խոսքը, եթե նկատի ունենանք թեկուզ այն փաստը, որ ՉԿԿ գավառային կոմիտեների վճռական դիրքերը, որոնք ստեղծվել են, այսպես կոչված՝ կուլտուրական հեղափոխության ընթացքում վերացված կոմիտեների փոխարեն, գրավում են հակադեմոկրատական ուղու վրա կանգնած մարդիկ: Եվ այդ պայմաններում մաոցզեդունյան շրջապատն ու նրա խոսափողը՝ «Ժենմին Ժիբաո» թերթը, ճամարտակում են «դեմոկրատական ցենտրալիզմի կուսակցական սկզբունքը խիստ կերպով կենսագործելու» անհրաժեշտության և այն մասին, որ «տարբեր աստիճանների կուսակցական կոմիտեները պետք է իրականացնեն «դեմոկրատիզմը» և ոչ «մոնոպոլիզմը»: Սա է հենց խոսքի և գործի կատարյալ անհամաձայնությունը:

ՍՄԿԿ XXIV համագումարում կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ հատկապես ընդգծվում է, որ «...կուսակցության ուժը, նրա գործունակությունը մեծապես որոշվում են նրանով, թե որքան հետևողականորեն և ճշտորեն է կենսագործվում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը: Մարքս-լենինյան կուսակցության համար հավասարապես վնասակար են ինչպես անարխիստական անկարգապահությունը, որը ներկայացվում է դեմոկրատիայի փոխարեն, այնպես էլ բյուրոկրատական կենտրոնացումը, որը կասեցնում է կոմունիստների նախաձեռնության և ակտիվության զարգացումը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 126):

Դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան բնորոշումը զարգացնող սկզբունքորեն կարևոր այս դրույթը հարվածում է կուսակցության կազմակերպական կառուցվածքի ու գործունեության հիմնական սկզբունքի ամեն կարգի խեղաթյուրողների ո՛չ թե հոնքին, այլ ուղղակի աչքին: Միաժամանակ այն կրկին ու կրկին նշում է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի ճիշտ մեկնաբանման անհրաժեշտությունը, սկզբունք, որը բացառում է ամեն տեսակ



միակողմանիություն և ունի ինչպես տեսական, այնպես և գործնական մեծ նշանակություն:

Վ. Ի. Լենինն ընդգծում է, որ ճիշտ ըմբռնված ցենտրալիզմը ենթադրում է կուսակցական կանգվածների ակտիվության ու ինքնագործունեության, կուսակցական կազմակերպությունների վերելք, որ մարտական քաղաքական կուսակցությունը չի կարող գոյություն ունենալ առանց այն բանի, որ «...մասսան ինքը գիտակցորեն քվեարկի ըստ կարևորագույն հարցերի էության» (Երկեր, h. 11, էջ 555): Ընդ որում, նա բազմիցս ընդգծել է, որ կուսակցության ներսում իրականացվող ցենտրալիզմը ոչ մի ընդհանուր կապ չունի մարքսիստական կուսակցության ոճին խորապես օտար, բյուրոկրատական ցենտրալիզմի հետ:

Կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական հասարակարգի ղեկավար ուժն է: Նրա ակտիվությունից, մասսաներին ղեկավարելու ունակությունից է կախված սոցիալիստական և կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծումը: Դրա համար անհրաժեշտ է միասնաբար, հետևողականորեն, արդյունավետ կենսագործել կուսակցության մշակած հասարակական ու տնտեսական զարգացման ծրագիրը: Իսկ դա կախված է կուսակցության բոլոր անդամներից, նրանց ստեղծագործական ակտիվությունից և ինքնագործունեությունից:

Իր բուն նշանակությամբ դեմոկրատիզմը ոչ այլ ինչ է, եթե ոչ մեծամասնության կամքի արտահայտություն: Այդ կամքի՝ իբրև մեծ հեղինակության, ընդունմամբ է հիմնավորվում ներկուսակցական դեմոկրատիան, որը օրգանապես իր մեջ է ներառնում բարձր կազմակերպվածությունը և ամուր, գիտակցական կարգապահությունը: Կուսակցության զարգացման օրինաչափություններից մեկն էլ հենց այն է, որ նրա շարքերում որքան բարձր է կազմակերպվածությունն ու կարգապահությունը, այնքան խոր, գործարար է դրսևորվում ներկուսակցական դեմոկրատիան, և, ընդհակառակը, որքան մեծ թափ է ստանում ներկուսակցական դեմոկրատիան, այնքան առավել կազմակերպվածությամբ ու կարգապահությամբ պետք է աչքի ընկնի յուրաքանչյուր կազմակերպության, ամեն մի կոմունիստի գործունեությունը:

Ներկուսակցական դեմոկրատիայի ընդլայնման ու խորացման շնորհիվ բարձրանում է կոմունիստների ստեղծագործական ակտիվությունը, իսկ դա, իր հերթին, բարերար ներգործություն է ունենում կուսակցության ողջ գործունեության կազմակերպվածության արդյունավետության վրա: Ներկուսակցական կյանքի բուն պայմանները, դեմոկրատական նորմերը բարձր պատասխանատվության զգացմունք են առաջացնում կոմունիստների մեջ ո՛չ միայն արտադրանքի, այլև կուսակցության քաղաքականության իրականացման համար: Կարգապահության ամրապնդումն ապահովում է կուսակցական կանգվածների համաձայնեցված, միասնական գործողությունը և, արտահայտելով իրական ու ոչ ցուցադրական ներկուսակցական դեմոկրատիայի էությունը, դառնում է նրա հետևողական զարգացման կարևորագույն պայմանը:

ՍՄԿԿ և ողջ սովետական հասարակության զարգացման ժամանակակից պայմաններում կուսակցության կյանքում դեմոկրատական սկզբունքների համակողմանի ընդլայնումը դարձել է ո՛չ միայն հնարավոր, այլև օբյեկտիվ անհրաժեշտություն: Բայց դա ամենևին չի նշանակում, որ կարելի է թուլացնել կուսակցության կարգապահությունը: Դրա հետ մեկտեղ, կուսակցական բուն կարգապահությունը— ամուր և գիտակցական— ըստ էության ներկուսակցական դեմոկրատիայի արտահայտությունն է: Հիշենք կուսակցական կարգապահության լենինյան կլասիկ բնորոշումը: «*Գործողությունների միասնականություն, քննարկման և քննադատության ազատություն*,— մատնանշել է նա,— ահա մեր որոշումը: Միայն այսպիսի կարգապահությունն է արժանի առաջավոր դասակարգի դեմոկրատական կուսակցությանը» (Երկեր, h. 11, էջ 395):

Այդ կապակցությամբ հարկ է նշել, որ կարգապահությունը կուսակցության ներսում կազմակերպության անդամների ո՛չ միայն համախոհ, այլև համա-

գործակցող մարդկանց գիտակցական կարգապահությունն է, որը մշակվում է միայն կուսակցական շարքերում դեմոկրատիզմի լայն ու համակողմանի գոյության դեպքում: Այդ այն մարդկանց կարգապահությունն է, որոնք, Լենինի արտահայտությամբ, չեն ճանաչում իրենց վրա «...ոչ մի ճնշում և ոչ մի իշխանություն, բացի իրենց սեփական միավորման... իշխանությունից» (Երկեր, հ 29, էջ 518):

Իսկական կոմունիստը չի նեղվում կարգապահությունից, կոլեկտիվի կամքին, մեծամասնության կամքին ենթարկվելու պահանջից: Կարգապահությունը նրա համար բեռ չէ, այլ ներքին պահանջ, գիտակցված անհրաժեշտություն: Այդպիսի կարգապահությունը ձեռք է բերվում, ամենից առաջ, համոզմունքի մեթոդներով: Եվ այդ հասկանալի է, քանի որ մարդիկ կուսակցության շարքերն են մտնում իրենց սրտի թելադրանքով, կամավոր իրենց վրա վերցնում լրացուցիչ, դժվարին պարտականություններ:

Առանց ամուր կարգապահության, առանց փոքրամասնության մեծամասնությանը ենթարկվելու, առանց կոլեկտիվ կերպով ընդունված որոշումների ու իր կուսակցական պարտքի կատարման համար կուսակցության յուրաքանչյուր անդամի բարձր պատասխանատվության չի կարող լինել ներկուսակցական դեմոկրատիա— այս է ճշմարտությունը: Ելնելով դրանից՝ ՍՄԿԿ XXIV համագումարը նոր ուժով ընդգծեց, որ *դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի անշեղ պահպանումը այսուհետև ևս պետք է լինի կուսակցության կյանքի անխախտ օրենքը՝ որպես նրա ամրության և գործունակության վճռական պայման,* որ ներկուսակցական դեմոկրատիայի կարգացումն անբաժանելի է կուսակցական կարգապահության ամրապնդումից, որ այսուհետև ևս հարկ է ամրապնդել կարգապահությունը կուսակցության մեջ, հասնել այն բանին, որ ամեն մի կոմունիստ անպայման կատարի ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջները (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 126, 133, 134):

Խորապես սխալ է այն պատկերացումը,— մատնանշեց Լ. Ի. Բրեժնևը Մոսկվայի XIX քաղաքային կոնֆերանսում, 1968 թ. մարտին,— թե կուսակցական երկաթյա կարգապահության անհրաժեշտության վերաբերյալ լենինյան ցուցումը նշանակություն ունի սոսկ անմիջական հեղափոխական գործողությունների ժամանակաշրջանի համար և կորցնում է իր սրությունը հետագա սոցիալ-տնտեսական և դեմոկրատական վերափոխությունների ընթացքում: Փորձն անհերքելիորեն սովորեցնում է, որ ամուր գիտակցական կարգապահությունն անհրաժեշտ է կուսակցությանը թե՛ այն ժամանակ, երբ նա մասսաներին տանում է դեպի հեղափոխություն, թե՛ այն ժամանակ, երբ նա, գլխավորելով մասսաներին, պայքարում է սոցիալիստական հասարակարգի ստեղծման համար, թե՛ սոցիալիզմի ու կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում: Սա է կուսակցության ուժի, նրա հաջողությունների և նրա հաղթանակների կարևորագույն աղբյուրներից մեկը (տե՛ս *Լենինյան կուրսով*, հ. 2, էջ 273):

Ներկուսակցական լայն դեմոկրատիայի հիման վրա անխոնջ հոգատարություն ցուցաբերելով հանուն կոմունիստների ակտիվության կարգացման՝ կուսակցությունը խնդիր է դնում բարձրացնել նրանց պատասխանատվությունը ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջների կատարման համար, խստորեն պատժելով նրանց, ովքեր իրենց վարքագծով արատավորում են կուսակցության անդամի կոչումը, խախտում կուսակցական և պետական կարգապահությունը, եզրակացություններ չեն անում քննադատությունից, իրենց վատ են պահում: ՍՄԿԿ-ն ընդգծեց, որ այդ առումով կոչված են լուրջ դեր կատարելու ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեն և տեղական կուսակցական օրգանների կուսհանձնաժողովները:

Կուսակցության հետագա ամրապնդմանը և կոմունիստների ակտիվության ու կարգապահության բարձրացմանը կնպաստի կազմակերպական-քաղաքական այնպիսի կարևոր միջոցառումը, ինչպես XXIV համագումարի որոշմամբ կուսակցական փաստաթղթերի առաջիկա փոխանակումն է:



Անհրաժեշտ է նշել, որ XXIV համագումարի փաստաթղթերում և նյութերում *կուսակցության կարգապահության հասկացությունը հարստացավ նոր բովանդակությամբ, նոր չափանիշներով ու պահանջներով:* Այնտեղ շեշտը դրված է ՍՄԿԿ անդամների գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության բարձրացման վրա, պասսիվության, անտարբերության, ապաքաղաքականության անթույլատրելիության վրա: Խստորեն պահանջվեց, որպեսզի ամեն մի կոմունիստ լինի գիտակից մարտիկ, միշտ և ամենուր արժանապատվությամբ կրի լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը:

Կուսակցական կարգապահության հասկացությունը համագումարը օրգանապես կապեց կոմունիստներին գաղափարական, բարոյական բարձր հատկություններով դաստիարակելու, կուսակցության հոծ պանգվածների կամքի ու գործողության միասնության հետագա ամրապնդման պրոբլեմի հետ: Նման մոտեցումը օրինաչափ է, ամենից առաջ, այն պատճառով, որ կուսակցական կարգապահության հիմքը՝ դա կոմունիստների բարձր գաղափարայնությունն է: Այժմ կուսակցությունը ժողովրդին տանում է դեպի ստեղծարար բարդ խնդիրների լուծում: Նրա բարոյական հեղինակությունը, ինչպես ընդգծվեց Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, նույնքան բարձր կլինի, որքան բարձր գաղափարական ու բարոյական հատկություններով օժտված լինի յուրաքանչյուր կոմունիստ (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 126—127): Գաղափարական համոզվածությունը կանխորոշում է, ամբողջությամբ վերցրած, ծրագրային, կանոնադրական և բարոյական պահանջների ու պարտականությունների խորապես գիտակցված պահպանումը կոմունիստների կողմից, որը, իր հերթին, նրանց միշտ և ամենուրեք դարձնում է կուսակցության իսկական քաղաքական մարտիկ թե՛ աշխատանքում, թե՛ հասարակական կյանքում, թե՛ ուսման մեջ, թե՛ կենցաղում:

XXIV համագումարում, ինչպես հայտնի է, սուր կերպով դրվեց կուսակցության այն անդամի պատասխանատվության հարցը, որն իրեն այդպիսի մարտիկ չի դրսևորում, ընկրկում է դժվարությունների առջև, անցնում թերությունների կողքով, հավանություն տալիս հետամնաց տրամադրություններին: Հարկ է նշել, որ կուսակցությունը քաղաքական ուսուցման սիստեմի առջև խնդիր է դնում՝ ոչ թե յուրաքանչյուր մարդու կողմից քաղաքական գիտելիքների որոշակի գումարի ուղղակի յուրացում, այլ այդ գիտելիքների վերածում կոմունիստական, խոր համոզմունքի, կոմունիստների հոգում գաղափարական քաղաքական մարտիկի հատկությունների պատվաստում:

Մեր կուսակցության տնտեսական-քաղաքական բոլոր խնդիրները լուծելիս միշտ մեծ նշանակություն է տրվել կոմունիստների ավանգարդային դերին: Արդի պայմաններում այդ նշանակությունն է՛լ ավելի է մեծանում: Ավանգարդային դերը գործում նշանակում է՝ կուսակցության անդամների կոմունիստական համոզմունքների ու գործողությունների միասնություն, նրանց բարձր կարգապահություն և կազմակերպվածություն: «Կոմունիստնե՛ր, առա՜ջ» հայտնի կոչն այժմ հարստացել է նոր բովանդակությամբ: Կուսակցությունը պահանջում է իր անդամներից, որպեսզի նրանք լինեն նորի, առաջավորի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի, հասարակական նոր հարաբերությունների համար մղվող պայքարի առջևում, բուրժուական ամեն կարգի բարոյականության դրսևորումների, պահպանողականության և լճացման դեմ մղվող պայքարի առջևում: Այդ խնդիրն առավել քան կարևոր է, քանի որ կոմունիստի գաղափարական, հոգեկան և բարոյական կերպարում այսօր արդեն մարմնավորվում են ապագա մարդու հատկանիշները:

Կոմունիստների ակտիվության, ինքնագործունեության և միաժամանակ պատասխանատվության բարձրացումը վճռապես կախված է, ամենից առաջ, սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մակարդակից: Դրա համար էլ կուսակցությունը մեծ հոգատարություն է հանդես բերում նրանց դերի բարձրացման նկատմամբ: Դա արտացոլվեց ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում:

Խոսելով կարգապահության ամրապնդման, համոզմունքների ու գործողությունների, խոսքի ու գործի միասնության ապահովման մասին, անհրաժեշտ է ընդգծել, որ կուսակցությունը, առաջադրելով հիշյալ պահանջները, արգելում է դրան հասնել վարչարարական մեթոդներով: Նման մեթոդները բնավ հատուկ չեն, ավելին, օտար են կոմունիստական կուսակցությանը, դրանք կարող են միայն վնասաբեր լինել, որը հաստատվել է կյանքով, փորձով: XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընդգծվում է, որ խոսքը սարսափի, կոպիտ վարչարարության մեթոդների վրա հիմնված կարգապահության մասին չէ, դրանք զրկում են մարդկանց վճռականությունից, նախաձեռնությունից, ծնում ինքնապահովում և անվստահություն: Խոսքը վերաբերում է մարդկանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա հիմնված կարգապահությանը (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 128):

Կադրերի շրջանում տարվող աշխատանքում կուսակցությունը վարում է մարդկանց հանդեպ վստահությունն ու հարգանքը սկզբունքային պահանջկոտության, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության զգացումի բարձրացմանը զուգակցելու լենինյան քաղաքականություն, որը բացառում է մերկ վարչարարությունը, հրամայականությունը, նյարդայնությունը, և անվստահությունը: Կուսակցությունը հենվում է, ամենից առաջ, աշխատողների բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա, բայց, միաժամանակ, անհաշտ է այնպիսիների նկատմամբ, ովքեր խախտում են կուսակցական և պետական կարգապահությունը, ովքեր ազնիվ չեն կուսակցության ու ժողովրդի հանդեպ, ովքեր կատարում են կոմունիստի աշխարհայացքային, բարոյական նորմերին, գործելակերպին անհամատեղելի արարք: Նման քաղաքականությունը լիովին ու ամբողջությամբ արդարացրեց իրեն և ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում գտավ իր նոր, համոզիչ հաստատումը:

Համագումարը, ամբողջությամբ վերցրած, մշակելով կուսակցության քաղաքականության պրոբլեմները, կարգացրեց լենինյան դրույթները, այդ պրոբլեմներն անմիջականորեն կապեց հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարման, մասսաների շրջանում տարվող կուսակցության կազմակերպական և քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացման խնդրի, ուստի և կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացման խնդրի հետ: Եվ դա միանգամայն օրինաչափ է, քանի որ, առաջին, ինչպես ընդգծել է Լենինը, չի կարելի որևէ քաղաքականություն վարել չարտահայտելով դրա նպատակը, առանց մարդկանց ընտրության ու նրանց տեղաբաշխման, երկրորդ, կոմունիստական շինարարության ժամանակակից խնդիրները, ինչպես երբեք, խիստ անհրաժեշտ են դարձնում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության անընդհատ, համակողմանի բարելավումը: Կյանքն այդ վճռական գործում ևս նոր, առավել բարձր պահանջներ է ներկայացնում:

Ելնելով այդ պահանջներից՝ XXIV համագումարն իր որոշումներում ընդգծեց, որ կուսակցությունն առաջնակարգ նշանակություն է տալիս այն բանին, որպեսզի կուսակցական, պետական, տնտեսական, կուլտուր-դաստիարակչական և հասարակական աշխատանքի բոլոր տեղամասերը գլխավորեն հասուն, գաղափարապես կոփված, գործին գիտակ, ունակ, եռանդուն կազմակերպիչներ, որպեսզի ղեկավար կադրերը կատարելապես տիրապետեն կառավարման մեթոդներին, օժտված լինեն նորի զգացողությամբ, տեսնեն զարգացման հեռանկարները, կարողանան գտնել ծագած պրոբլեմների լուծման առավել արդյունավետ ուղիներ, օգտագործեն ուրիշների գիտելիքներն ու փորձը:

Կադրերի հանդեպ կուսակցական պահանջկոտության հասկացողությունն այսօր հարստացել է: «Մենք ղեկավարներին քննադատում ենք,— ասաց Լ. Ի. Բրեժնևը Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— երբ նրանք սխալ են գործել, թույլ են տվել այս կամ այն զանցանքը: Եվ սա ճիշտ է՝ պահանջկոտությունը հարկավոր է բարձրացնել: Բայց կարծում ենք, որ պետք է ավելի խիստ քննադատել ո՛չ միայն նրանց, ովքեր սխալներ են գործում, այլև նրանց, ովքեր



բոլոր հնարավորությունները չեն օգտագործում արտադրության զարգացման համար, չեն ցուցաբերում նախաձեռնություն, պասսիվ են ապրում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 86): Այդ դրույթը խոր իմաստ ունի: Այնտեղ, այս ամենից զատ, անձեռներեցությունը որոշակի չափով կապվում է անկարգապահության հետ:

Կադրային քաղաքականության ասպարեզում համագումարի դրույթը շարունակում և զարգացնում է ժողովրդի միջից տաղանդների հայտաբերման և առաջ քաշման, բանվորների, գյուղացիների շրջանից ղեկավար կադրերի դաստիարակման լենինյան ավանդույթը: Աշխատանքային կոլեկտիվներում կան ոչ քիչ թվով ընդունակ, եռանդուն մարդիկ, որոնք փորձ կուտակելով կարող են հաջողությամբ գլխավորել արտադրա-տնտեսական և հասարակական գործունեության տարբեր տեղամասեր:

Խոսելով կուսակցության կադրային քաղաքականության և համագումարի
փաստաթղթերում դրա արտացոլման մասին՝ օրինաչափ է շոշափել նաև կու-
սակցական կադրերի, ակտիվի կողմից կուսակցական շինարարության *հիմունք-*
*ների ուսումնասիրման, ինչպես և կուսակցական աշխատանքի փորձի ընդ-*
*հանրացման պրոբլեմը:* Ե՛վ այս, և՛ այն նպաստում են կուսակցական կազ-
մակերպությունների կազմակերպական և քաղաքական գործունեության ձևերի
ու մեթոդների կատարելագործմանը, կուսակցական ղեկավարման արդյունա-
վետության բարձրացմանը, կուսակցական ողջ աշխատանքի, կոմունիստների
գաղափարական համոզվածության ձևավորմանը:
Վերջին ժամանակներս կուսակցական աշխատողների, ակտիվի մեծ մասը
սկսել է առավել համառորեն ու սիստեմատիկորեն տիրապետել կուսակցական
շինարարության հարցերին վերաբերող լենինյան տեսական ժառանգությանը՝
ինչպես կուսակցական դպրոցներում, տեսական կոնֆերանսներում, մարք-
սիզմ-լենինիզմի երեկոյան համալսարաններում, այնպես և ինքնուրույն: Դա
օգնում է նրանց կուսակցության մասին մարքս-լենինյան ուսմունքի էության,
կուսակցական շինարարության սկզբունքների ու կուսակցական կյանքի նոր-
մերի ճիշտ ըմբռնմանը, կուսակցական աշխատանքի առավել կատարելագործ-
ված ձևերի ու մեթոդների որոնմանը, դրա գիտական հիմնավորվածության
բարձրացմանը:
Միաժամանակ, չի կարելի չնկատել և այն, որ կուսակցական շինարարու-
թյան հարցերի ուսումնասիրությունն ինչպես իր թափով, այնպես և խորու-
թյամբ առայժմ չի բավարարում այժմեականության պահանջները: Այդ առու-
մով շատ բան է կախված նաև կուսակցական շինարարության՝ որպես գիտու-
թյան բնագավառում աշխատող գիտնականներից:
ՍՄԿԿ Կենտկոմը լուրջ ուշադրություն է նվիրում հիշյալ գիտության զար-
գացմանը, որի վկայություններից մեկը ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ-ում կու-
սակցական շինարարության բաժնի, դրա ֆիլիալներում համապատասխան
սեկտորների, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմին կից հասարակական գիտություն-
ների ակադեմիայում կուսակցական շինարարության ամբիոնների ստեղծումն
է: Կուսակցության Կենտկոմն իր «ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզ-
մի ինստիտուտի խնդիրների, կառուցվածքի և հաստիքների մասին» 1968 թ.
հունիսի 15-ի որոշման մեջ ընդգծեց, որ անհրաժեշտ է ինստիտուտի ջանքերը
կենտրոնացնել կուսակցության շինարարության վերաբերյալ աշխատություն-
ների պատրաստման վրա, որոնք հարստացնում են ՍՄԿԿ փորձը լենինյան
կազմակերպական սկզբունքների կենսագործման ասպարեզում, բացահայտում
կոմունիստական շինարարության մարզում կուսակցության ղեկավար դերի
զարգացման ու բարձրացման, կուսակցական կազմակերպությունների գործու-
նեության ձևերի ու մեթոդների կատարելագործման օրինաչափությունները,
եղբայրական կոմունիստական և բանվորական կուսակցություններում կոմու-
նիստական շինարարության պրակտիկայի ուսումնասիրման վրա: Ընդ որում,
ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ ուշադրություն է նվիրում այնպիսի աշխատություն-
ների ստեղծման անհրաժեշտությանը, որոնք ունենային տեսական ու գործնա-

կա՛ն լուրջ նշանակություն և բովանդակեի՛ն խոր հետևություններ ու կոնկրետ
հանձնարարականներ:

Կուսակցակա՛ն շինարարության տեսական հիմունքների լուսաբանման և
կուսակցական աշխատանքի փորձի ընդհանրացման գործում լուրջ դեր ունի
կատարելու մեր հրատարակչություններում լույս ընծայվող գրականությունը:
Հարկ է նշել, որ վերջին տարիներին հրատարակվել են կուսակցական շինա-
րարության վերաբերյալ մեծ թվով գրքեր ու բրոշյուրներ: Միութենական գրքի
պալատի տվյալներով հինգ տարվա ընթացքում (1965—1969 թթ.) դրանց
թիվը խիստ մեծացել է, հասել ավելի քան 1400 անունի: Այդ հրատարակու-
թյունների մեծ մասը որոշակիորեն, շատ թե քիչ չափով, օգնում կբերի կուսակ-
ցական ակտիվին, ընթերցողների բավական լայն շրջանին, որոնց մեջ նկատե-
լիորեն մեծացել է հետաքրքրությունը կուսակցական շինարարության տեսու-
թյան և պրակտիկայի հարցերի ուսումնասիրման նկատմամբ:

Այդ թեմայով առավել հիմնական աշխատությունների ուսումնասիրությու-
նը ցույց տվեց, որ դրանց մեծ մասում ավելի խոր, քան նախկինում, հետա-
կոտվում են լենինյան ժառանգությունը, դրա ինտերնացիոնալ նշանակությու-
նը, ընդհանրացվում է ՍՄԿԿ փորձը՝ լենինյան կազմակերպական սկզբունք-
ները կյանքում կենսագործելու ասպարեզում, բացահայտվում կոմունիստա-
կան շինարարության ոլորտում կուսակցության բարձրացող դերը, լուսաբան-
վում տեղական կուսակցական կազմակերպությունների փորձը: Միաժամա-
նակ, գրականության բովանդակությունը հավաստում է, որ որոշ հրատարա-
կություններում կան լուրջ թերություններ: Այնտեղ բացակայում կամ գրեթե
բացակայում են նոր հետևությունները, ընդհանրացումները, գործնական
հանձնարարականները: Գրականության զգալի մասն ունի հանրամատչելի և
ոչ հետազոտական բնույթ: Կուսակցական շինարարության պրոբլեմներին նը-
վիրված ժողովածուներում՝ գիտական և գործնական առումով հետաքրքրական
աշխատությունները, որոշ դեպքերում, խառնվում են մեծ չափերի հասնող
թույլ, ընթերցողին գրեթե ոչինչ չտվող հոդվածներին: Կուսակցական շինարա-
րության վերաբերյալ շատ գրքերի ու բրոշյուրների մակարդակը դեռևս ցածր է:

Գիտական կոնֆերանսի՝ «ՍՄԿԿ համագումարը և մարքս-լենինյան տե-
սության կարգացման հարցերը», ներածական խոսքում ՍՄԿԿ Կենտկոմի քար-
տուղար Մ. Ա. Սուսլովը նշում է, որ ՍՄԿԿ ղեկավար դերի վերաբերյալ ուս-
մունքի կարգացման, կուսակցական շինարարության հարցերի գիտական
մշակման նկատմամբ կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի մեծ ուշա-
դրությունը բխում է այն բանից, որ կոմունիստական շինարարության բոլոր
պրոբլեմների հաջող լուծման անհրաժեշտ պայմանը մարքս-լենինյան կուսակ-
ցության ղեկավարումն է: Այս խոսքերում սպառիչ, հստակ բնորոշվում է կուսակ-
ցական շինարարության՝ որպես գիտության նշանակությունը:

Այստեղից հասկանալի է, թե որքան կարևոր է հնարավորին չափ ակտիվ
ու արդյունավետ լուծել կուսակցական շինարարության տեսության և պատ-
մության հրատապ պրոբլեմները: Կուսակցական շինարարության պատմու-
թյան վերաբերյալ ծանրակշիռ, որակյալ աշխատությունը կարող է ունենալ ո՛չ
միայն զուտ տեսական, ճանաչողական, այլև գործնական արժեք: Տեսական
հետազոտությունների բարձր մակարդակն անհնար է առանց կուսակցական շի-
նարարության պատմական փորձի մանրազնին ու համակողմանի ընդհանրա-
ցումների ու վերլուծության: Այլ խոսքով, կուսակցական շինարարությունն իբրև
գիտություն միայն այն դեպքում կարող է բավական խոր ու գիտականորեն
հիմնավորված պատասխաններ տալ ժամանակակից պրոբլեմներին, երբ այն
հենվի կուսակցական շինարարության պատմության, տասնամյակների ըն-
թացքում բուռն, բազմակողմանի գործունեությամբ կուտակված ամենահարուստ
փորձի վրա: Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի
ինստիտուտը պլանավորում է մոտ ապագայում հրատարակության պատրաս-
տել կուսակցական շինարարության պատմության վերաբերյալ հանգամանալից
աշխատություն:

Բայց, հասկանալի է, գլխավոր ջանքերը պետք է ուղղվեն կուսակցական



շինարարության ժամանակակից պրոբլեմների, ինչպես և ՍՄԿԿ ու եղբայրա-
կան կոմունիստական կուսակցությունների կողմից կուսակցության, կուսակ-
ցական կյանքում նրա գաղափարական, քաղաքական և կազմակերպական սկզ-
բունքների ու նորմերի վերաբերյալ լենինյան ուսմունքի զարգացման, ՍՄԿԿ
դերի բարձրացման և կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների հետա-
գա կատարելագործման, արդի պայմաններում կոմունիստական շինարարու-
թյան բնագավառում դրանց զարգացման դիալեկտիկայի, եղբայրական կու-
սակցությունների կուսակցական շինարարության մեջ ինտերնացիոնալիստա-
կանի և ազգայինի, ընդհանուրի և յուրահատուկի պրոբլեմների մշակմանը:

* * *

Բուրժուական կեղծարարների ու ռևիզիոնիստների փորձերը, մի կողմից՝
Մարքսի ու Էնգելսի հայացքներին հակադրել կուսակցության վերաբերյալ լե-
նինյան ուսմունքը, մյուս կողմից՝ ապացուցել, թե այն ունի միայն զուտ
ռուսական, ազգային նշանակություն, վերջերս, ավելի ու ավելի համառ են
դառնում: Մինչդեռ, այդ ուսմունքը, ինչպես և արդի կոմունիստական շարժու-
մը պրոլետարական կուսակցության վերաբերյալ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի
հանճարեղ գաղափարների, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծած ու ղեկավարած
առաջին կոմունիստական կազմակերպությունների լավագույն ավանդույթների
ուղղակի շարունակությունն ու համակողմանի զարգացումն են:

Այդ իսկ պատճառով կարծում ենք, որ խիստ կարևոր է խորապես բացա-
հայտել կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի անխախտ միասնու-
թյունը և դրա հիմքում դրված Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի արմատական դրույթ-
ները, անընդհատ ընդգծել այն անառարկելի փաստը, որ լենինյան ուսմունքի
մեջ արտացոլվել են մարքսիզմի ինչպես տեսությունը, այնպես և հեղափոխա-
կան պրակտիկան, առաջին միջազգային կոմունիստական կազմակերպու-
թյունների փորձը:

Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունը մեր կուսակցության ու ժողո-
վրդի, միջազգային կոմունիստական շարժման և ողջ մարդկության հանդեպ
այն է, որ, հենվելով գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատություննե-
րի, միջազգային և ռուսական բանվորական շարժման վրա, նա մշակեց ամ-
բողջական, կուռ ուսմունք նոր տիպի կուսակցության, բանվոր դասակարգի
ավանգարդի, սոցիալիզմի և կոմունիզմի կուսակցության մասին: Այդ ուսմուն-
քի հիմքում ընկած է Մարքսի ու Էնգելսի, հիրավի, հանճարեղ գաղափարն
այն մասին, որ միայն բանվոր դասակարգի ինքնուրույն քաղաքական կու-
սակցությունն է ունակ ճիշտ արտահայտելու, պաշտպանելու բանվորների,
աշխատավորների արմատական շահերը, նրանց կամքը, ձգտումներն ու նպա-
տակները:

Կուսակցության ծրագրային, քաղաքական ու կազմակերպական անխախ-
տելի միասնությունը ամրապնդված է նրա հիմնական փաստաթղթերում՝ ծրա-
գրում և կանոնադրության մեջ, կոմունիստական կուսակցության կազմակեր-
պական կառուցվածքը լիովին ենթարկվում է նրա գաղափարներին, նպատակ-
ներին և խնդիրներին: Միայն կոմունիստական կուսակցությանը, նոր տիպի
կուսակցությանն է բնորոշ ծրագրի՝ որպես կուսակցության շարքերում բանվոր
դասակարգի, ողջ աշխատավորների առավել հեղափոխական և գիտակից ներ-
կայացուցիչների գաղափարա-տեսական ու քաղաքական միավորման հիմունքի
և, կուսակցության կազմակերպական կառուցվածքի ձևերը, կուսակցական կյան-
քի նորմերը սահմանող կուսակցական կանոնադրության միասնությունն ու
խիստ սերտ կապը: Լենինը կատարյալ ամտություն է համարել ոչ-գաղափա-
րական կազմակերպվածությունը: Կուսակցական շինարարության նրա մշա-
կած սկզբունքները, կուսակցական կյանքի նորմերը, որոնք դիմացել են ժա-
մանակի փորձությանը և ճանաչում ստացել միջազգային կոմունիստական

շարժման կողմից, ո՛չ միայն կուսակցության կազմակերպական, այլև գաղափարական, քաղաքական հիմունքն են և միաժամանակ կոնկրետացնում են այդ հիմունքները կազմակերպական որոշակի ձևերով և ղեկավարման մեթոդներով: Լենինյան կազմակերպական սկզբունքները գիտականորեն հիմնավորված բնույթ ունեն, արտացոլում են նոր տիպի կուսակցության օբյեկտիվ օրինաչափությունները և, գաղափարական ու քաղաքական սկզբունքների հետ մեկտեղ, ծառայում բանվոր դասակարգի ու նրա կուսակցության վրա դրված պատմական առաքելության հաջող կատարմանը:

XXIV համագումարի փաստաթղթերն ու նյութերը պարունակում են մի շարք այդպիսի կարևոր դրույթներ, որտեղ կոնկրետ արտահայտություն են գտել կուսակցության վերաբերյալ լենինյան ուսմունքի, կուսակցական շինարարության լենինյան սկզբունքները:

Համագումարի պատմական որոշումներն ու փաստաթղթերը հուսալի, մարտական ղեկավարության ուղեցույց են մեր տասնչորս միլիոնանոց կուսակցության գործունեության համար: Դրանք ուղղված են կուսակցության շարքերի միասնության ու համախմբման հետագա ամրապնդմանը, նոր հնգամյակի կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման համար մղվող պայքարում կուսակցական կազմակերպությունների, բոլոր կոմունիստների ակտիվության կարգացմանը:

«Вопросы истории КПСС», 1972, № 2.



# ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Ա. Ա. ԵՍԱՅԱՆ

Իրավաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները ներքին ու արտաքին թըշ-*
*նամիներից պաշտպանելու, ավերված տնտեսությունը վերականգնելու, սո-*
*ցիալիստական հասարակարգը կառուցելու խնդիրներն ու ընդհանուր շահերը*
*սովետական հանրապետություններին օբյեկտիվորեն մղում էին պետականո-*
*րեն միավորվելու։ Սովետական հանրապետությունների միավորման ուղիներն*
*ու սկզբունքները մշակել է կոմունիստական կուսակցությունը՝ Վ. Ի. Լենինի*
*գլխավորությամբ։*
*Մերժելով սովետական հանրապետությունների սովերեն հավասարու-*
*թյունը ժխտող առաջարկությունները, Վ. Ի. Լենինն առաջ քաշեց կամավորու-*
*թյան և լիակատար իրավահավասարության հիմունքներով սովետական հան-*
*րապետություններին մեկ միասնական պետության կազմում միավորելու գա-*
*ղափարը, որն արժանացավ կուսակցության հավանությանը և դրվեց Սովե-*
*տական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման*
*հիմքում։*
*ՍՍՀՄ կազմավորվեց հաշվի առնելով սովետական հանրապետություննե-*
*րի համագործակցության փորձը և ժամանակի հրամայական պահանջները։*
*Եղբայրական օգնություն ցույց տալով մեկը մյուսին և միմյանց հետ կապված*
*լինելով պայմանագրային դաշինքով, սովետական հանրապետությունները,*
*հաղթահարելով անհամար դժվարություններ, հաջողությամբ լուծեցին իրենց*
*առջև դրված խնդիրները և թևակոխեցին սոցիալիստական կարգերի ամրա-*
*պընդման ու զարգացման նոր շրջան, երբ անհրաժեշտ էր միավորվել մեկ*
*միասնական պետության մեջ։ Այդպիսի միասնական պետություն ստեղծելու*
*հիմքում դրվեցին 1920 թ. դեկտեմբերի 30-ի դեկլարացիան և Միության վե-*

բաբերյալ պայմանագիրը, որով միավորվող հանրապետությունները համա-
ձայնվեցին իրենց նոր պետությունը կոչել Սովետական Սոցիալիստական Հան-
րապետությունների Միություն:
1922 թ. դեկտեմբերի 30-ին Սովետների Համամիութենական առաջին հա-
մագումարը հռչակեց ՍՍՀՄ կազմավորումը, որը խոշոր իրադարձություն էր
ո՛չ միայն սովետական ժողովուրդների կյանքում, այլև համաշխարհային
մասշտաբով։
Միասնական տնտեսություն ստեղծելու ժողովուրդների տնտեսական մեր-
ձեցման տենդենցը, որն աստիճանաբար մեկ ամբողջության մեջ էր միավո-
րում հսկայական տերիտորիաներ, որոշակիորեն դրսևորվեց դեռևս կապիտա-
լիզմի զարգացման շրջանում։ Սակայն այդ բոլորը տեղի էր ունենում ո՛չ թե
ժողովուրդների իրավահավասարության, այլ թույլերի ճնշմամբ ու շահագործ-
մամբ։
Բռնության վրա խարսխված բազմազգ պետություններ շատ են եղել
անցյալում, սակայն նրանցից ոչ մեկը չի հարատևել։ Ժողովուրդներին՝ նրանց
կամքին ու շահերին հակառակ մեկ պետության մեջ միավորելը հանդիպեց
ավելի զորեղ դիմադրության, որը ճնշված, նվաստացած ու շահագործվող ժո-
ղովուրդների մոտ դրսևորվեց իբրև ազգային անկախության գաղափար, որի
մասսայական գործադրմամբ՝ իմպերիալիստական ճնշմամբ ստեղծված մի
շարք բազմազգ պետություններ կազմալուծվեցին։
Սովետական Միության կազմավորման միջազգային նշանակությունը
նախ՝ պայմանավորված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխու-
թյան ինտերնացիոնալիստական բնույթով։ Հոկտեմբերյան հեղափոխության
արմատական հարցերը միջազգային նշանակություն ունեն այդ բառի լայն
իմաստով։ Այդ հարցերի մեջ ուրույն տեղ է գրավում ազգային հարցը, որի
լուծման ճիշտ ելքը ապահովեց Հոկտեմբերյան հեղափոխությունը։ Կուսակ-
ցության XI համագումարում արտասանած ճառում, ընդգծելով հեղափոխու-
թյան հիմնական նվաճումների կայունությունը, Վ. Ի. Լենինը նշեց. «Ոչ մի
ուժ աշխարհում, որքան էլ նա դեռ չարիք, աղետներ և տանջանքներ բերի մի-
լիոնավոր և հարյուր միլիոնավոր մարդկանց, չի կարող ետ վերցնել մեր հե-
ղափոխության հիմնական նվաճումները, որովհետև դրանք այժմ արդեն «մեր»
նվաճումները չեն, այլև համաշխարհային-պատմական նվաճումներ են» (Եր-
կեր, հ. 33, էջ 385)։ Այդ առումով կարող ենք անվարան ասել, որ Սովետա-
կան Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը,
պատմական իրադարձություն լինելով սովետական ժողովուրդների կյանքում,
նաև համաշխարհային նշանակություն ունեցող երևույթ էր։
Պատմության մեջ առաջին անգամ սոցիալական ու ազգային ճնշումից
ազատագրված ժողովուրդներն առանց որևէ հարկադրանքի, հոժարակամ և
գիտակցելով ընդհանուր շահերը՝ սոցիալիստական հասարակարգի կառուցու-
մը, իրենց ազգային շահերը համատեղ պաշտպանելու անհրաժեշտությունը,
միավորվեցին ու ստեղծեցին աշխարհի առաջին սոցիալիստական պետու-
թյունների միությունը, որպես միասնական բազմազգ պետություն։
ՍՍՀՄ իր գոյության առաջին իսկ օրից հանդես եկավ որպես խաղաղու-
թյան, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար պայքարող ուժերի համաշխար-
հային կենտրոն, որի հետ իրենց հույսերն անդարձ կապեցին աշխատավորա-
կան ամենալայն զանգվածները։



Սովետական Միությունը պետությունների սովորական միավորում չէ, այլ,
ինչպես ասված է կուսակցության XII համագումարում (ազգային հարցի մա-
սին ընդունված բանաձևում), ըստ էության, պրոլետարիատի առաջին փորձն
է, անկախ երկրների միջազգային փոխհարաբերությունները կարգավորելու
նպատակով։ Սովետական հանրապետությունների միությունը ժողովուրդների
համակեցության և համագործակցության նոր ձև է միութենական միասնական
պետության կազմում։
Մեկ միության մեջ սովետական հանրապետությունների նյութական ու
հոգևոր ուժերի միավորումը բազմապատկեց սոցիալիզմ կառուցելու նրանց
հնարավորությունները, ստեղծեց միասնական բռունցք իմպերիալիզմի գրոհ-
ները ետ մղելու համար, որպիսի վտանգը մշտապես կախված էր նրանց գլ-
խին։ Մտնելով Միության կազմի մեջ, սովետական հանրապետություններից
յուրաքանչյուրը հուսալի հենարան ձեռք բերեց իր ազգային պետականության
անվտանգությունն ու սուվերենությունը կապիտալիստական ոտնձգություն-
ներից պաշտպանելու համար։
Սովետական Միության ռազմա-տնտեսական հզորության աճին զուգըն-
թաց, մեծացել է նրա գործուն դերը աշխարհի հեղափոխական վերափոխում-
ների ոլորտում։ Բոլոր մայրցամաքների ժողովուրդները հանձին նրա տեսել ու
տեսնում են իրենց դասակարգային և ազգային շահերի պաշտպանին, իմպե-
րիալիզմի դեմ մղվող պայքարի իրենց ավանգարդին ու հենարանին։
Լինելով ողջ աշխարհի խաղաղության ու ժողովուրդների անվտանգության
դրոշակակիրը, Սովետական Միությունը բոլոր ժամանակներում հանդես է
եկել որպես միաձույլ ինտերնացիոնալ ուժ։ Կառուցելով սոցիալիստական հա-
սարակարգ, ՍՍՀՄ դրանով ամուր ու հուսալի հենարան է ստեղծել սոցիալա-
կան արդարության և ազգային ազատագրության համար մարտնչող բոլոր
ժողովուրդների համար։ Իր այդ պատմական միսիան Սովետական Միությունն
իրականացրել է անհամար դժվարություններ հաղթահարելու և սովետական
ժողովուրդների կրած զոհաբերությունների գնով։
Սովետական Միությունն անդադրում պայքարել է ժողովուրդներին ավե-
րիչ պատերազմների արհավիրքներից փրկելու համար։ Նախապատերազմյան
տարիներին ՍՍՀՄ-ը ամեն ջանք գործադրեց պատերազմը կանխելու։ Առան-
ձին կապիտալիստական պետությունների հետ կնքած չհարձակման համա-
ձայնագրերը, չեզոքության պակտերը, փոխադարձ օգնության պայմանագրե-
րը կոչված էին ծառայելու ոչ միայն սովետական երկրի անվտանգության
ապահովմանը, այլև բոլոր ժողովուրդների համար խաղաղությունն ամրա-
պնդելու շահերին։ «Խաղաղությունն անբաժանելի է» սովետական լոզունգը
մարմնավորում էր սովետական պետության արտաքին խաղաղասիրական քա-
ղաքականության ինտերնացիոնալիստական բնույթը։ Այդ նշանաբանով էր
գործում ՍՍՀՄ, երբ նա ամեն հնարավոր քայլերի դիմեց կոլեկտիվ անվտան-
գության սիստեմ ստեղծելու՝ ֆաշիստական ագրեսիան կանխելու համար։
Սակայն արևմտյան բուրժուական պետությունները հրաժարվեցին Սովետա-
կան Միության հետ հանուն խաղաղության համագործակցելուց։
Իմպերիալիստական տերությունների սանձազերծած երկրորդ համաշ-
խարհային պատերազմի տարիներին Սովետական Միությունը գլխավորեց
խաղաղասեր ժողովուրդների կռիվն ընդդեմ հիտլերյան ոճրագործ պատերազ-
մի։ Հակառակ միջազգային իմպերիալիզմի բոլոր դավերին և ԱՄՆ-ի ու Անգ-

լիայի կառավարող շրջանների ուխտադրժությանը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը պատվով ու փառքով կատարեց իր պատմական միսիան։ Սովետական քաջարի բանակը պատմական հաղթանակ տարավ թշնամու դեմ, հիտլերյան Գերմանիայի ու նրա արբանյակների զինված ուժերը գլխովին ջախջախվեցին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի դասերն անառարկելիորեն խոսում են այն մասին, որ միայն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ժողովուրդների տիտանական ջանքերի ու ինտերնացիոնալ պարտքի նկատմամբ դրսևորած անսահման հավատարմությունն էր, որ աշխարհի ժողովուրդներին փրկեցին ֆաշիզմի մարդակործան լծից։ Սովետական եղբայրական ժողովուրդների անխախտ, սերտ համագործակցությունը միասնական պետության կազմում ո՛չ միայն դիմացավ պատերազմի դաժան փորձություններին, այլև հաղթական դրոշով թևակոխեց զարգացման նոր շրջանը։ Սովետական ժողովուրդներն ավելի ու ավելի համախմբվեցին իրենց պայքարի ու հաղթանակների ոգեշնչողի՝ Հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը։

Ազատագրելով իրենց հողերն անարգ թշնամուց, սովետական զինված ուժերը օգնության ձեռք մեկնեցին հիտլերյան գարշապարի տակ ընկած ժողովուրդներին։ Սովետական Միության վճռական դերի շնորհիվ հաղթություն ձեռք բերվեց ճապոնական միլիտարիզմի դեմ։

Սովետական Միության գլխավորած խաղաղասեր ուժերի հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմում, արմատական փոփոխություններ մտցրեց համաշխարհային իրադրության մեջ։ Աշխարհում գործող քաղաքական ուժերի հարաբերակցությունը փոխվեց հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի։ Պատերազմի հիմնական ծանրությունն իր ուսերին կրած ՍՍՀՄ-ը պատերազմն ավարտեց ռազմա-քաղաքական ու տնտեսական տեսակետից առավել հզորացած։ Կապիտալիզմի համաշխարհային սիստեմից անջատվեցին և զարգացման սոցիալիստական ուղին բռնեցին Եվրոպայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի մի շարք երկրներ, որոնք Սովետական Միության հետ կազմեցին սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Փոխվեց ուժերի հարաբերակցությունը կապիտալիզմի համաշխարհային սիստեմում։ Բանվոր դասակարգն ու աշխատավորական լայն զանգվածներն այժմ ավելի կազմակերպված և ավելի հետևողական են իրենց ազատության համար կապիտալի դեմ մղվող պայքարում։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումը և սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում նրա ձեռք բերած պատմական նվաճումներն էապես ներգործել են կապիտալիստական երկրներում աշխատավորական զանգվածների դասակարգային պայքարի ընթացքի վրա։ Սովետական Միության և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջողությունները ոգեշնչում են կապիտալի երկրների բանվոր դասակարգին՝ հանուն սոցիալիստական կարգերի հաստատման նրա մղած պայքարում։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի կատարումը նոր և ավելի բարձր մակարդակի կհասցնի Սովետական Միության հզորությունը, աննախընթաց կբարձրանա աշխատավորության կենսամակարդակը։

Էկոնոմիկայի ասպարեզում սոցիալիստական սիստեմի և կապիտալիզմի



միջև ընթացող հակամարտը թևակոխել է նոր փուլ, որը բնորոշ է համաշխարհային արտադրության մեջ սոցիալիստական երկրների տեսակարար կշռի աճով, ուժերի հարաբերակցության անկասելի փոփոխմամբ՝ հօգուտ սոցիալիզմի։ Տնտեսական փոխօգնության կազմակերպության անդամ սոցիալիստական երկրները, եթե 1950 թ. տվել են համաշխարհային արդյունաբերական արտադրության մեկ հինգերորդը, ապա 1970 թ. նրանց բաժինն արդեն կազմում էր մեկ երրորդ։

Ինչպես ասված է ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտրոնական Կոմիտեի տված հաշվետվության մեջ, մեր ժամանակներում «կապիտալիստական ճնշման դեմ պայքարող մարտիկներին դիմակայում է վերջին, բայց գոյություն ունեցած շահագործական բոլոր դասակարգերից ամենազորեղը (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 21)։ «Բանվոր դասակարգի ներկայիս խոշոր ճակատամարտերը դասակարգային նոր մարտերի կանխագուշակն են, որոնք կարող են հանգեցնել հասարակական հիմնավոր վերափոխումների, աշխատավորության մյուս խավերի հետ դաշն կնքած բանվոր դասակարգի իշխանության հաստատման» (նույն տեղը, էջ 22)։ Այդ գոտեմարտում միջազգային բանվորական շարժումները հենվել ու հենվում են Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների բանվոր դասակարգերի ինտերնացիոնալ աջակցության և օգնության վրա։

Նոր թափով ծավալվեցին ազգային ազատագրական շարժումները, որոնք վերջին հաշվով, հանգեցրին իմպերիալիզմի գաղութային ամբողջ սիստեմի փլուզմանը։

Պատերազմի ավարտից հետո էլ Սովետական Միության վրա են հենվում միջազգային իմպերիալիզմի, ռեակցիայի ու գաղութատիրության դեմ պայքարող ժողովուրդները։ Սովետական Միության հզորությունը, նրա վճռականությունն ու հետևողականությունը հուսալի երաշխիք հանդիսացան բուրժուական կարգերը տապալած ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար, որոնք ՍՍՀՄ օգնությամբ ու աջակցությամբ կայունացրին իրենց քաղաքական ու տնտեսական դրությունը և ձեռնամուխ եղան սոցիալիզմի հիմքերի կառուցմանը։ Բանն այն է, որ առանց այդ օգնությանն ու աջակցությանը երիտասարդ սոցիալիստական երկրները ո՛չ միայն չէին կարող ոտքի կանգնել պատերազմի պատճառով ծայրահեղ քայքայված լինելու հետևանքով, այլև չէին կարող դիմակայել իմպերիալիզմի գրոհներին, որը պատրաստ էր հոշոտելու սոցիալիզմի ուղին բռնած երկրներին։

Հայտնի է, թե իմպերիալիստական տերությունները ի՞նչ դիրք գրավեցին մեր հայրենիքի նկատմամբ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո։ Կապիտալիստական աշխարհի առաջատար իմպերիալիստական տերություններն ու նրանց գործակիցները քաղաքացիական պատերազմ հրահրեցին մեր երկրում և ապա համատեղ ուժերով դիմեցին ռազմական ինտերվենցիայի սովետական ժողովուրդների հեղափոխական նվաճումները ոչնչացնելու, սոցիալիստական կարգերը տապալելու նպատակով։ Իմպերիալիստներն անթիվ ու անհամար զոհեր պատճառեցին մեր երկրին, սակայն չկարողացան հասնել իրենց ստոր դիտավորությունների իրականացմանը։ Սովետական եղբայր ժողովուրդների միաձուլությունն ու հաղթելու անհողդողդ կամքն ապահովեցին հաղթանակը իմպերիալիզմի սև ուժերի նկատմամբ։

Իմպերիալիստական ռազմական ինտերվենցիայի սպառնալիքը կախված էր նոր սոցիալիստական երկրներից յուրաքանչյուրի և բոլորի վրա։ Սակայն միջազգային իմպերիալիզմի սև ուժերը չհանդգնեցին դիմելու նման հանցավոր քայլի միայն այն պատճառով, որ աշխարհում գոյություն ունի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ ՍՍՀՄ եղբայրական օգնությունն ու աջակցությունը սոցիալիստական երկրներին, եղել ու մնում է նրա ինտերնացիոնալիստական միսիայի գլխավոր նպատակներից մեկը։ ՍՍՀՄ վճռական դիրքը՝ ԱՄՆ-ի իմպերիալիստական ինտերվենցիան Կուբայի դեմ կանխելու, սոցիալիստական մյուս երկրների հետ համատեղ Չեխոսլովակիայում կապիտալիզմի ռեստավրացիայի փորձերի վիժեցումը, ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան ետ մղելու նպատակով Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությանը ցույց տրվող համակողմանի օգնությունն այդ բանի լավագույն օրինակներն են։

Հավատարիմ ՍՄԿԿ XXIV համագումարի սահմանած խաղաղասիրական միջազգային քաղաքականության կուրսին, Սովետական Միությունը հանդես է գալիս ամեն կարգի ագրեսիվ պատերազմի, այդ թվում, այսպես կոչված, լոկալ պատերազմների դեմ։ Անդրադառնալով ՍՍՀՄ արտաքին քաղաքականության նպատակներին ու խնդիրներին, ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում արտասանած ճառում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ սովետական երկրի արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղությունը պատերազմի օջախների վերացման պայքարն է և անկախության նկատմամբ իմպերիալիզմի ոտնձգություններին հակահարված տալը։ Այդ մասին է վկայում Հնդկաչինի ժողովուրդների դեմ ամերիկյան իմպերիալիզմի հանցավոր պատերազմի նկատմամբ սովետական երկրի գրաված դիրքը։

«Հնդկաչինում մղվող պատերազմը, որը ԱՄՆ-ի պրեզիդենտի խոստովանությամբ «ամենատևական և ծանր պատերազմն է Ամերիկայի պատմության մեջ», ցույց տվեց ագրեսիայի և ժողովուրդների ճնշման իմպերիալիստական քաղաքականության ողջ սնանկությունը... Հենվելով Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնության և աջակցության վրա, այնուհետև ասաց Լ. Ի. Բրեժնևը, Հնդկաչինի ժողովուրդները շարունակում են ագրեսորի դեմ իրենց պայքարը թե՛ ռազմական, թե՛ դիվանագիտական և թե՛ քաղաքական ճակատներում։

Այդ պայքարում սովետական ժողովուրդն ամբողջովին Հնդկաչինի ժողովուրդների կողմն է։ Նրանց օգնելը մեր ինտերնացիոնալ պարտքն է, և մենք այն կկատարենք մինչև վերջ» («Ս. Հ.», 21 մարտի, 1972 թ.)։

Անցած 50 տարիների ընթացքում Սովետական Միության կյանքում տեղի ունեցան արմատական տեղաշարժեր։ Հասարակությունը վերակառուցվեց սոցիալիստական հիմունքներով, սոցիալիզմը լիակատար ու վերջնական հաղթանակ տարավ մեր երկրում, սովետական ժողովուրդը թևակոխեց կոմունիզմի կառուցման շրջանը, բարձրացավ ՍՍՀՄ պաշտպանական հզորությունը և ավելի ամրապնդվեցին նրա միջազգային դիրքերը։ Այդ ամենի միջազգային նշանակությունն արտահայտվում է նաև նրանում, որ, ինչպես ասված է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ՍՍՀՄ-ը համաշխարհային ասպարեզում հանդես է գալիս որպես մի ուժ, որը հաստատ և հետևողականորեն վարում է խաղաղության ու բարեկամության



քաղաքականություն, պաշտպանում ժողովուրդների իրավահավասարության
լենինյան սկզբունքները, վճռականորեն հանդես գալիս գաղութարարության,
նեոգաղութարարության ու ռասիզմի, ազգային ճնշման բոլոր ձևերի դեմ։

Հենվելով Սովետական Միության և սոցիալիստական համագործակցու-
թյան մյուս երկրների վրա, գաղութային տիրապետության լուծը թոթափեցին
և պետական ինքնուրույնություն նվաճեցին ավելի քան 70 երկրների ժողո-
վուրդներ։ Քաղաքական անկախություն նվաճած ազգային պետությունները
սոցիալիստական երկրներից լայն օգնություն և աջակցություն են ստանում
իրենց քաղաքական ինքնուրույնությունն ամրապնդելու և տնտեսական անկա-
խություն հասնելու համար՝ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։

Սովետական պետությունն առաջինն էր, որ իմպերիալիզմի տիրապետու-
թյունից ազատագրված երկրների հետ հաստատեց իրավահավասարության,
փոխադարձ հարգանքի, ներքին գործերին չմիջամտելու, հակաիմպերիալիս-
տական ընդհանուր պայքարում բազմակողմանի համագործակցության վրա
հենված հարաբերություններ։ Հավատարիմ այդ սկզբունքներին, Սովետական
Միությունը հետևողականորեն պաշտպանում է ժողովուրդների հեղափոխա-
կան շարժումը իմպերիալիզմի քաղաքական ու տնտեսական ճնշումից ազա-
տագրվելու, սոցիալական առաջադիմության համար, նա ինտերնացիոնալ
համերաշխության քաղաքականություն է վարում գաղութային ու ռասիստա-
կան վարչակարգերի դեմ զենքը ձեռքներին մարտնչող հայրենասերների նը-
կատմամբ։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պաշտ-
պանական հզորությունը և հետևողական խաղաղասիրական քաղաքականու-
թյունը կարևորագույն գործոններ են բոլոր ժողովուրդների բաղձալի խաղա-
ղությունն ապահովելու, համաշխարհային նոր պատերազմը կանխելու համար։

Ղեկավարվելով արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքներով,
Սովետական Միությունը ելնում է այն բանից, որ պատերազմը չի կարող և
չպետք է միջազգային վեճերը լուծելու միջոց լինի։ Իմպերիալիստական պե-
տությունների ագրեսիվ քաղաքական կուրսին, ՍՍՀՄ-ը հակադրում է տար-
բեր սոցիալ-տնտեսական սիստեմների պատկանող երկրների փոխհարաբե-
րությունները խաղաղ գոյակցության սկզբունքի վրա կառուցելու խաղաղասի-
րական քաղաքական կուրսը։ Այս, առաջին հերթին, նշանակում է, որ պետք է
հրաժարվել պատերազմից որպես պետությունների միջև վիճելի հարցերը լու-
ծելու միջոցի։ Սովետական Միության ջանքերով միջպետական վեճերը խա-
ղաղ ճանապարհով լուծելու պահանջը դարձել է միջազգային իրավական
սկզբունք, իսկ սրանից հետևում է, որ պետությունները պարտավոր են իրենց
փոխհարաբերություններում չդիմել ուժի կամ ուժի սպառնալիքի կիրառմանը։
Սոցիալիստական և կապիտալիստական երկրների խաղաղ գոյակցու-
թյունը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտու-
թյուն և երկու սիստեմներին պատկանող պետությունների միջև մղվող դա-
սակարգային պայքարի մի յուրահատուկ ձև է, որը ենթադրում է միջպետա-
կան վեճերը կարգավորել միայն խաղաղ միջոցներով, իրավահավասարու-
թյուն, փոխըմբռնում և վստահություն պետությունների միջև, միմյանց ներ-
քին գործերին չմիջամտել, խստորեն հարգել բոլոր երկրների սուվերենությու-
նը և տերիտորիալ ամբողջականությունը, ճանաչել, որ յուրաքանչյուր ժողո-
վուրդ իրավունք ունի ինքնուրույն լուծելու իր երկրի բոլոր հարցերը և այլն։

Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում Կենտրոնական կո-
միտեի հաշվետու զեկուցման մեջ նշեց. «Ագրեսիային հասցվող ուժգին հա-
կահարվածը մեր քաղաքականության մեջ զուգորդվել է միջազգային հասու-
նացած պրոբլեմների կարգավորման, սոցիալական այլ սիստեմի պատկանող
պետությունների հետ նորմալ, իսկ որտեղ թույլ են տալիս հանգամանքները,
լավ հարաբերություններ պահպանելու կոնստրուկտիվ գծի հետ։ Ինչպես որ
առաջներում, մենք հետևողականորեն պաշտպանել ենք պետությունների խա-
ղաղ գոյակցության լենինյան սկզբունքը՝ անկախ նրանց հասարակարգից։
Ներկայումս այդ սկզբունքը վերածվել է միջազգային զարգացման իրական
ուժի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 29—30)։

Ելնելով այն բանից, որ պատերազմ ծնող գլխավոր պատճառը՝ իմպե-
րիալիզմը դեռևս պահպանվում է, նոր համաշխարհային պատերազմի սպառ-
նալիքը չի վերացել, բոլոր խաղաղասեր պետությունների և ժողովուրդների
կենսական գործն է թույլ չտալ, որ այդ սպառնալիքը իրականություն դառնա։
Սովետական Միությունը ընդհանուր նպատակի համար պայքարող բո-
լոր ուժերի ավանգարդում է։ Միջազգային ասպարեզում ՍՍՀՄ հանդես է
գալիս որպես համընդհանուր և լիակատար զինաթափման ջատագովն ու
առաջամարտիկը, այն համարելով որպես խաղաղության և անվտանգության
առավել հուսալի երաշխիք։

ՍՄԿԿ XXIV համագումարը զինաթափման վերաբերյալ գործնական
առաջարկություններ առաջ քաշեց, որոնք լայն և նպաստավոր արձագանք
գտան աշխարհում։ ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեան հավանություն տվեց զինա-
թափման համաշխարհային կոնֆերանս հրավիրելու սովետական գաղափա-
րին, և այդ նպատակով որոշակի քայլեր են ձեռնարկվում։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ար-
տաքին քաղաքականության լենինյան կուրսն արդի էտապում մարմնավորված
է ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումներում, որոնք ճանաչված
են որպես խաղաղասիրության ծրագիր։ Այդ քաղաքական կուրսը խոր և բա-
րեբար ազդեցություն ունի միջազգային անցքերի ընթացքի վրա։

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության անցած
50-ամյա փառավոր ուղին խոսում է այն մասին, որ ՍՍՀՄ կազմավորումը
հսկայական միջազգային նշանակություն ունի ամբողջ մարդկության սոցիա-
լական առաջադիմության համար։ ՍՍՀՄ ժողովուրդների ընդհանուր ջանքե-
րով զարգացած սոցիալիստական հասարակարգ կառուցվեց, լուծվեց ազգային
ավելի քան բարդ հարցը։ Սովետական Միության այդ պատմական փորձը հա-
մաշխարհային ճանաչում է ստացել և անգնահատելի օգնություն է սոցիալա-
կան ու ազգային ազատագրության համար պայքարող բոլոր ժողովուրդներին։
Աշխարհի ժողովուրդները Սովետական Միության փորձի մեջ տեսնում են
իրենց ազատագրության ուղին և եղբայրական համագործակցության լավա-
գույն օրինակ։

Սովետական բազմազգ սոցիալիստական պետությունը միավորում է 15
միութենական և 20 ինքնավար հանրապետություն, 8 ինքնավար մարզ և 10
ազգային օկրուգ, որոնց անխախտ բարեկամությունը և եղբայրական համա-
գործակցությունը միասնական պետության կազմում նրանց դարձրել է մեկ
միաձույլ ընտանիք։ Սովետական ժողովուրդների անխախտ համագործակցու-



թյունը Սովետական Միության պատմական նվաճումների աղբյուրն է, կուսակ-
ցության XXIV համագումարի նախանշած ծրագրի կատարման գրավականը։
Սովետական բազմազգ պետությունը զարգանում է Վ. Ի. Լենինի կողմից մշակ-
ված դեմոկրատական ցենտրալիզմի, սոցիալիստական ֆեդերալիզմի և սո-
ցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների հիման վրա։ Սովետական Սո-
ցիալիստական Հանրապետությունների Միությունը շահագործողների տիրա-
պետությունից ազատագրված ժողովուրդների կամավոր դաշինքի առավել
կենսունակ ձևն է։ Սովետական ժողովուրդների կյանքում ՍՍՀՄ կազմավո-
րումն իր քաղաքական նշանակությամբ և սոցիալ տնտեսական հետևանքնե-
րով անգնահատելի է։ «Կուսակցությունը այսուհետև ևս կամրապնդի Սովե-
տական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, հետևողակա-
նորեն վարելով սոցիալիստական ազգերի ծաղկման և նրանց աստիճանական
մերձեցման լենինյան կուրսը»,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարին
Կենտրոնական կոմիտեի տված հաշվետվության մեջ (նույն տեղը, էջ 100—
101)։



# ԱՆԴՐՖԵԴԵՐԱՑԻԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՕՐԻՆԱԿ

Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ

## 1.

*Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, աշխատանքային և քաղաքական մեծ խանդավառության պայմաններում պատրաստվում է այս տարվա դեկտեմբերին նշելու ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը։ ՍՍՀՄ կազմավորումը լենինյան հանճարի ծնունդ է։ Բազմազգ սոցիալիստական պետության ստեղծման գործում մեծ է կուսակցության ու ժողովրդի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծառայությունը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 50-ամյակի նախապատրաստության մասին» որոշման մեջ։*

*Վ. Ի. Լենինը, իրեն հատուկ հեղափոխական եռանդով ու նվիրումով, ստեղծագործաբար զարգացրեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գաղափարները, ստեղծեց ազգային հարցի վերաբերյալ կուռ, բոլոր փորձություններին դիմացած ուսմունք, մշակեց կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության սկզբունքները։ Լենինիզմի անհաղթ ուժը դրսևորվում է ժողովուրդների բարեկամության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի, «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարքսիստական նշանաբանին անսահման հավատարմության մեջ։*

*Մարքսիզմի զարգացման լենինյան էտապում ժողովուրդների բարեկամության ուղենիշը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է, որի անմիջական ջատագովը բանվոր դասակարգն է՝ ամենահետևողական հեղափոխական դասակարգը։*

*Սովետական բազմազգ ժողովրդի կյանքի խոշոր իրադարձության՝ ՍՍՀՄ կազմավորման տոնի նախապատրաստությունը, որն անցնում է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների ու գաղափարների բարերար ներգործությամբ, նոր ուժով է ցուցադրում սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկի՝ լենինյան ազգային քաղաքականության, սովետական ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության, ինտերնացիոնալ համախմբվածության կենսահաստատությունը, սովետական հասարակարգի հզոր շարժիչ ուժի վեհությունը։*

## 2.

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն իր բնույթով լինելով ինտերնացիոնալ՝ վերջ տվեց ազգային ճնշմանն ու հարստահարմանը «ժողովուրդների բանտ» ցարական Ռուսաստանում, մեր երկրում արմատապես լուծեց ազգային հարցը, որի հիմքում ընկած է ազգերի ինքնորոշման լենինյան գաղափարը։ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթարշավից անմիջապես հետո սովետական կառավարության հռչակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում», «Աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայում», ՌՍՖՍՀ և սովետական մյուս հանրապետությունների սահմանադրություններում օրենսդրական կարգով սահմանվեցին Ռուսաստանի բոլոր ազգությունների ազատ զարգացումն ու լիակատար իրավահավասարությունը։*

*Հոկտեմբերյան հեղափոխությունը խաղաղություն, ազգային ու սոցիալական ազատություն տվեց ինչպես Ռուսաստանի, այնպես էլ Անդրկովկասի բազմազգ ժողովուրդներին։ Ադրբեջանում, Հայաստանում, Վրաստանում սովետական իշխանության հաղթանակով արմատական շրջադարձ կատարվեց երկրամասի ժողովուրդների կյանքում, նրանց պատմական ճակատագրում։ Բացվեց սոցիալիստական կյանքի արշալույսը։ Սկսվեց մի նոր դարագլուխ՝ սոցիալիստական վերափոխությունների, տնտեսական, քաղաքական, մշակութային զարգացման դարագլուխը։*

*Անդրկովկասի սովետական հանրապետությունները, բռնելով հեղափոխական վերափոխումների և սոցիալիզմի կառուցման ուղին, Հոկտեմբերի բոցերում ծնված սովետական մյուս հանրապետությունների պես ավելի սերտորեն էին համախմբվում մեծ Ռուսիայի՝ ՌՍՖՍՀ-ի շուրջը, որը ՍՍՀՄ յուրատեսակ նախատիպն էր, և օրինականորեն ձգտում էին ֆեդերատիվ միավորման։ Չէ՞ որ ինտերնացիոնալիզմը լիովին արտահայտում էր հեղափոխական պայքարում միավորված Կովկասի պրոլետարիատի և աշխատավոր մասսաների շահերը։*

*Երկրամասի սոցիալ-դեմոկրատական, լենինյան-իսկրայական, բոլշևիկյան կազմակերպությունները, ողջ պրոլետարիատը, ինչպես և բանվորական հեղափոխական ու ագրարային շարժումներն իրենց ծագման առաջին իսկ օրերից ունեին ինտերնացիոնալ բնույթ։*

*Տակավին 1903 թվականի մարտի կեսերին, Թիֆլիսում գումարված Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հիմնադիր համագումարը հավանություն տվեց լենինյան «Իսկրա»-ի հրատարակած ՌՍԴԲԿ ծրագրի նախագծին, հիմք դրեց Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների միասնական ղեկավար օրգանին՝ ՌՍԴԲԿ Կովկասյան Միությանը։ Համագումարը կուսակցական կազմակերպության կառուցման լենինյան ինտերնացիոնալ սկզբունքը նորից հռչակեց որպես միակ ճիշտ սկզբունք։ Այդ ժամանակվանից մինչև 1936 թվականը Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները ամբողջ երկրամասի համար ունեցել են մի միասնական ղեկավար կենտրոն։ Միութենական կոմիտեին հետագայում հաջորդել են բոլշևիկների երկրային կենտրոնը՝ Գրական բյուրոն, ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոն, ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն, ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոն, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Անդրկովկասյան երկրային կոմիտեն։ Գլխավորելով Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը, նրանք պայքարել են իրենց դարն ապրած ազգային առանձին միջնորմների դեմ, ամրապնդել և զարգացրել են երկրամասի աշխատավորների ինտերնացիոնալ ավանդույթները, ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, միասնությունը և համագործակցությունը։*

*Կովկասի լենինյաններն իրենց ինտերնացիոնալ պրոպագանդայով ու ագիտացիայով հաղթահարում էին ազգային մեկուսացման և օտարման վտանգը, ազգային հակամարտությունները, նպաստում դարեր ի վեր կողք-կողքի ապրող ժողովուրդների մերձեցմանը, դասակարգային գիտակցության հասունացմանը։ Անցյալ դարի 90-ական թվականներից սկսած երկրամասում բոլոր հուզող հարցերի վերաբերյալ գրականությունը, թռուցիկներն ու կոչերը հրատարակվում էին ռուսերեն, հայերեն, վրացերեն, ադրբեջաներեն և այլ լեզուներով։ Նույնը արվում էր նաև գաղափարական աշխատանքի մյուս ձևերի՝*

բանվոր ագիտացիայի, քաղաքական պրոպագանդայի ժամանակ։ «Ռուսը տարածում և փակցնում էր հայկական և վրացական պրոկլամացիաներ,— 1903 թվականին գրել է լենինյան «Իսկրա»-ն,— հայ բանվորն ագիտացիա էր անում թաթարների (ադրբեջանցիների—Խ. Բ.) մեջ, վրաց գրաշարը տպագրում էր ռուսերեն թռուցիկներ, և նրանք բոլորը միասին, համատեղ մշակում էին ցույցերի, գործադուլների, կազմակերպական ժողովների, գործողությունների պլանը» (տե՛ս «Իսկրա», № 51, 22 հոկտեմբերի, 1903 թ.)։

Կովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ինտերնացիոնալ ավանդույթները հիացմունք են պատճառել Վ. Ի. Լենինին։ 1913 թ. փետրվարին Կրակովից Կապրի կղզի (Իտալիա) Մաքսիմ Գորկուն գրած նամակում Իլյիչը ասել է. «Մեզ մոտ և Կովկասում ս.-դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին միասին տասը տարուց ավելի միասնական ս.-դ. կազմակերպության մեջ։ Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում։ Միակ լուծումը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 79)։

1913 թվականի ապրիլի 18-ին Կրակովում կարդացած «Ժամանակակից Ռուսաստանը և բանվորական շարժումը» դասախոսության մեջ Վ. Ի. Լենինը, խոսելով Կովկասի սոցիալ-դեմոկրատիայի մասին, այն օրինակ է համարել ազգային հարցի պրոլետարական լուծման համար. «Մեզ համար օրինակ պետք է ծառայի սոցիալ-դեմոկրատիան Կովկասում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 19, էջ 37)։ Իլյիչը նույն միտքը արտահայտել է շատ անգամ, այդ թվում՝ 1913 թվականի մայիսի 9-ին «Պրավդա»-ում հրապարակված «Սեպարատիստները Ռուսաստանում և սեպարատիստները Ավստրիայում» հոդվածում և այլ աշխատություններում։ «Բանվորական շարժման շահերին ու խնդիրներին համապատասխանում է բոլոր ազգերի բանվորների միայն այն լիակատար միասնությունը (տեղերում, վարից մինչև վեր),— գրել է Վ. Ի. Լենինը,— որ այնքան երկար ու այնքան հաջող իրագործվում էր Կովկասում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 19, էջ 88)։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ հարկավոր է կիրառել ս.-դ. բանվորների ինտերնացիոնալ սկզբունքը, «...մի սկզբունք, որ այնքան փայլուն կերպով ստուգված է Կովկասում 1898 թվականից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 20, էջ 655)։

Կովկասում ինտերնացիոնալ բնույթ ունեին ցարիզմի դեմ աշխատավոր մասսաների մղած դասակարգային գոտեմարտերը։ Ինտերնացիոնալիզմի փառապանծ դրոշի տակ են ընթացել Թիֆլիսի բանվորների 1898 թվականի մայովկան, 1899—1903 թվականներին Բաքվում, Բաթումում, Թիֆլիսում, Երևանում, Ալեքսանդրապոլում և այլ քաղաքներում անցկացրած մայիսմեկյան ցույցերը, Թիֆլիսի երկաթուղայինների 1900 թվականի օգոստոսյան, Բաթումի բանվորների 1903 թվականի ձմեռային (հունվար—փետրվար) գործադուլները, Բաքվի պրոլետարիատի 1903 թվականի հուլիսյան քաղաքական հուժկու գործադուլը։ Ադրբեջանում, Վրաստանում, Հայաստանում պրոլետարական շարժման առանձին առվակները միանում և կազմում էին մեկ ընդհանուր հեղափոխական հեղեղ, որն ավելի ուժգին էր բախվում ցարիզմի փտած հիմքերին։ Ռուսները, վրացիները, հայերը, ադրբեջանցիները և երկրամասի մյուս ժողովուրդների զավակները, կոտրելով ազգամիջյան թշնամանքի պատնեշները, եղբայրական ձեռք էին մեկնում միմյանց, ավելի սերտորեն համախմբվում բանվոր դասակարգի շուրջը, վճռականորեն գրոհում ցարիզմի և բուրժուազիայի տիրապետության դեմ։

Անդրկովկասի ժողովուրդները, բոլշևիկյան կազմակերպությունների գլխավորությամբ, իրենց հեղափոխական ինտերնացիոնալ համախմբվածությունն ամրապնդեցին ռուսական երեք հեղափոխությունների, հատկապես Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության և երկրամասում սովետական իշխանության հաղթանակի համար մղած դասակարգային թեժ պայքարի բովում։

Նոր կյանքի համար մղած մարտերում օրավուր կոփվում էին ժողովուրդ-



ների ինտերնացիոնալ կապերը, ամրապնդվում հավատարմությունը պրոլետարիատի ազատագրական մեծ պայքարին։

### 3.

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր բովանդակությամբ օժտեց Անդրկովկասի ժողովուրդների բարեկամությունն ու համագործակցությունը, նոր ուժ և իմաստ հաղորդեց նրանց ինտերնացիոնալ ավանդույթներին։ Ջևավորվեցին ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունն ու եղբայրական համագործակցությունը, որոնք խարսխված են ամենաառաջավոր գաղափարների՝ մարքսիզմ-լենինիզմի վսեմ ուսմունքի վրա։

Ժողովուրդների բարեկամության դրոշը բարձր ծածանեց Բաքվի պրոլետարիատը։ 1918 թվականին Ս. Շահումյանի գլխավորած Բաքվի կոմունան պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիանալի տիպար էր։

Եղբայրության և բարեկամության վառ խորհրդանիշ էր Վ. Ի. Լենինի ցուցումներով 1922 թվականին կյանքի կոչված Անդրկովկասյան ֆեդերացիան, որի կազմավորումից անցել է 50 տարի և որը շուրջ 14 տարի գործեց հաջողությամբ, կարևոր դեր խաղալով երկրամասի աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, բազմազգ սոցիալիստական պետության՝ ՍՍՀՄ կազմավորման և զարգացման գործում։ Անդրֆեդերացիան երկրամասի ժողովուրդների պատմության մեջ նշանավորեց նոր էտապ, ժողովուրդների բարեկամության և եղբայրության, ազգային խաղաղության էտապը։ Անդրֆեդերացիան առաջացավ կյանքի թելադրանքով։ Այն դիալեկտիկական օրինաչափություն էր, երկրամասի սոցիալ-տնտեսական, ռազմա-քաղաքական շահերից բխող պահանջ։ Վ. Ի. Լենինը, հաշվի առնելով երկրամասի առանձնահատկությունները, սովետական կարգերի հաղթանակից հետո Կովկասի կոմունիստներին խորհուրդ էր տալիս Ադրբեջանը, Հայաստանը, Վրաստանը միավորել տնտեսական մի կենտրոնում։ Ծրագրային նշանակություն ունեցավ Վ. Ի. Լենինի 1921 թվականի ապրիլի 14-ի՝ «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետության կոմունիստ ընկերներին» գրած նամակը, որն իր հետ Կովկաս բերեց Ա. Մյասնիկյանը։ Իլյիչն այդ նամակում խորհուրդ էր տալիս, թե ինչպես վերականգնել և զարգացնել քայքայված ժողովրդական տնտեսությունը, զգույշ և նրբանկատ ազգային քաղաքականություն վարել Արևելքի արթնացող ժողովուրդների նկատմամբ։ Կովկասի սովետական հանրապետությունների «սերտ դաշինքը կստեղծի ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ,— ասում էր Վ. Ի. Լենինը,— որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 32. էջ 402)։

Ա. Մյասնիկյանը 1921 թ. նոյեմբերին իր «Կովկասյան հանրապետությունների ֆեդերացիան» հոդվածում, պարզաբանելով ֆեդերացիայի անհրաժեշտությունը, ասում էր. Անդրկովկասյան ֆեդերացիայի ամբողջ իմաստը հենց այն է, որ ապահովվի Կովկասի ժողովուրդների ազատությունն ու անկախությունը, միավորի առանձին հանրապետությունների բաժան-բաժան ջանքերը, վերացնի նրանց տնտեսական անհաղորդ վիճակը և ստեղծի այնպիսի զորեղ ռազմա-քաղաքական միություն, որն ի վիճակի լինի պաշտպանելու Կովկասի աշխատավորների նվաճումները և կուլտուրական զարգացումը։ Ա. Մյասնիկյանը, այնուհետև պարզաբանում էր, որ եվրոպական կապիտալիստների հովանավորությամբ նրանց կովկասյան լակեյների՝ մենշևիկների, դաշնակների և մուսավաթականների կազմած սև-դեղին բլոկին պետք է հակադրել եղբայրական աշխատավորական դաշինքը, անկեղծ և հզոր միությունը (տե՛ս Ա. Մյասնիկյան, Ընտիր երկեր, Երևան, 1957, էջ 368)։

Քանի որ Անդրկովկասը գյուղացիական երկիր էր, պահանջվում էր վերին աստիճանի զգուշություն՝ մանր բուրժուական զանգվածներին սովետական շինարարության ընդհանուր հոսանքի մեջ ներգրավելու համար։ Իլյիչը Կովկասի կոմունիստներին խորհուրդ էր տալիս մեխանիկորեն նույնությամբ չընդօրինակել ՌՍՖՍՀ-ում իրականացվող տակտիկան, այլ ստեղծագործաբար, ինք-

նույն կերպով, ելնելով տեղական առանձնահատկություններից, կիրառել 1917—1921 թվականների փորձի ոչ թե տառը, այլ ոգին, իմաստը, դասերը։

Անդրֆեդերացիան ժողովրդական մասսաների միասնական կամքի արտահայտություն էր։ Անդրֆեդերացիայի օրրանի մոտ էին հավատարիմ լենինյաններ Գ. Օրջոնիկիձեն, Ս. Կիրովը, Ա. Մյասնիկյանը, Ն. Նարիմանովը, Մ. Օրախելաշվիլին և կուսակցական-պետական այլ աչքի ընկնող գործիչներ։ Երկրամասի բոլշևիկները, ժողովրդական մասսաների շրջանում, քայլ առ քայլ հասունացնելով ֆեդերացիայի գաղափարը, 1922 թվականի մարտին ամուր հիմք են դնում Անդրֆեդերացիային, որի լիակատար ձևավորումն ավարտվում է նույն թվականի դեկտեմբերի 10—13-ին Բաքվում գումարված սովետների Անդրկովկասյան առաջին համագումարում։ Անդրկովկասի եղբայրական երեք հանրապետությունների լիազոր ներկայացուցիչների 1922 թվականի մարտին Թիֆլիսում գումարված կոնֆերանսը հռչակեց Անդրկովկասյան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Ֆեդերատիվ Միություն (ԱՍՍՀՖՄ)։ Ջենովայի կոնֆերանսի նախօրյակին և ի հակակշիռ Անդրկովկասյան բուրժուա-նացիոնալիստական Փարիզի վտարանդիական կոնֆերանսին, դա մեծ հաղթանակ էր և՛ ներքին, և՛ միջազգային առումով։

Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի սովետական սոցիալիստական հանրապետությունների միութենական պայմանագրում նշվում էր, թե երեք հանրապետությունները ղեկավարվելով ազգությունների ինքնորոշման սկզբունքներով, ճանաչելով պայմանավորվող յուրաքանչյուր կողմի անկախությունն ու ինքնուրույնությունը և գիտակցելով համախմբման անհրաժեշտությունը, որոշում են, որ այսուհետև Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունները միմյանց հետ ռազմական, քաղաքական և տնտեսական դաշինք են կնքում։ Միութենական պայմանագրի բոլոր 13 կետերն էլ տոգորված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի, փոխադարձ հարգանքի և ինքնուրույնության պահպանման ոգով. Սովետների Անդրկովկասյան առաջին համագումարի բացումից առաջ, 1922 թվականի դեկտեմբերի 10-ի առավոտյան, Ա. Մյասնիկյանի նախագահությամբ գումարվեց ՌԿ (բ) Կ Անդրերկրկոմի, Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի կոմունիստական կուսակցությունների կենտկոմների համատեղ պլենումը։ Ամփոփվեց անցած շրջանում կատարված աշխատանքը, քննարկվեցին համագումարի հետ կապված գործնական հարցերը։ Նույն օրը, երեկոյան ժամը 6-ին, հանդիսավոր իրադրության մեջ բացվեց սովետների Անդրկովկասյան առաջին համագումարը։ Կարմիր դրոշակներով, բազմալեզու լոզունգներով զարդարված դահլիճը բազմամարդ էր։ Բացի պատգամավորներից, կային շատ հյուրեր։ Երկրամասի աշխատավորները համագումար էին ուղարկել 582 պատգամավոր, այդ թվում՝ 175 ադրբեջանցի, 160 վրացի, 131 հայ, 83 ռուս, 12 հրեա և Անդրկովկասի մյուս ազգությունների ներկայացուցիչներ։ Նրանցից բանվորներ էին՝ 195, գյուղացիներ՝ 125, բարձրագույն կրթությամբ՝ 75, միջնակարգ՝ 194, տարրական կրթությամբ՝ 308 հոգի։

Ն. Նարիմանովը ԱՍՍՀՖՄ Միութենական Սովետի անունից բացելով համագումարը, ասաց. «Պատմական այս օրը բերկրանքից բաբախում են Անդրկովկասի բոլոր աշխատավորների սրտերը, քանի որ այսօր հիմք է դրվում այն շենքին, որի հարկի տակ Անդրկովկասի բոլոր աշխատավորները կապրեն և՛ ընդհանուր տխրությունը, և՛ ընդհանուր ուրախությունը» (տե՛ս Первый Закавказский съезд Советов, Тифлис, 1923, стр. 1)։

Համագումարը լսեց Ն. Նարիմանովի և Գ. Օրջոնիկիձեի զեկուցումները, հավանություն տվեց Անդրկովկասի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Ֆեդերատիվ Միության (ԱՍՍՀՖՄ) ութամսյա գործունեությանը, որոշեց այն վերակազմել Անդրկովկասյան Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետության (ԱՍՖՍՀ)։

Այսպիսով ավարտվում է Անդրֆեդերացիայի կազմավորումը։

Համագումարն ընտրեց սովետների առաջին համագումարի պատգամավորներ, Անդրֆեդերացիայի Գերագույն օրգան՝ Անդրկովկասյան Կենտգործ-



կոմ (150 անդամ, 50 թեկնածու), երեք նախագահ (Աղամալի Օղլի, Ս. Համբարձումյան, Մ. Ցխակայա)։ Համագումարից հետո կազմվեց ֆեդերացիայի կառավարությունը՝ ժողկոմսովետը։

Անդրկովկասի սովետական հանրապետությունների տնտեսական, քաղաքական և մշակութային կապերն է՛լ ավելի են ընդլայնվում։ Բաքվի համագումարից մի քանի օր անց, դեկտեմբերի 30-ին, Մոսկվայում, Կրեմլում բացված սովետների համամիութենական առաջին համագումարը, արտահայտելով սովետական բոլոր հանրապետությունների միասնական կամքը, ընդունեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն կազմելու վերաբերյալ պատմական դեկլարացիան։ ՍՍՀՄ-ի կազմավորման, միութենական մեկ պետության մեջ միավորվելու մասին սոցիալիստական սուվերենության և իրավահավասարության սկզբունքներով պայմանագիր կնքեցին՝ Ռուսաստանի Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետությունը, Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը, Անդրկովկասյան Սովետական Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետությունը (որի կազմում էին Ադրբեջանը, Հայաստանը, Վրաստանը)։

Մեծ Հոկտեմբերի դրոշով, սոցիալիզմի կառուցման պրոցեսում աստիճանաբար սոցիալ-տնտեսական, մշակութային բարենպաստ պայմաններ ստեղծվեցին Սովետական Միության ազգային-պետական շինարարության կատարելագործման, սովետական բոլոր հանրապետությունների բազմակողմանի զարգացման համար։ Անդրկովկասյան Ֆեդերացիան հանդիսացավ այն ամուր հիմնաքարը, որի վրա բարձրացավ երկրամասի ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամության ամրոցը։

Սովետական իշխանության սկզբնական շրջանում Անդրկովկասի բուրժուա-նացիոնալիստական տարրերը ջանում էին խափանել կոմունիստական շինարարությունը։ Անդրֆեդերացիայի ուղին հարթ չէր։ Քիչ փոթորիկներ, անցանկալի երևույթներ, դիմադրություն և թշնամական հարձակումներ չեղան Անդրֆեդերացիայի կազմավորման ճանապարհին։ Բայց դրանք բոլորն էլ վնասազերծվեցին հանուն եղբայրական հարաբերությունների ամուր հաստատման, հանուն ազգային հարցի լենինյան լուծման։ Ֆեդերացիան կոչված էր ո՛չ միայն վերացնելու բուրժուական նացիոնալիստների «ժառանգությունը»՝ սահմանային, տրանզիտային, արոտավայրերի, ջրերի օգտագործման և այլ վեճերը, այլև ստեղծելու բարեկամական առողջ մթնոլորտ, շիկացած երկաթով այրելու և ոչնչացնելու նացիոնալիզմը, երկրամասի ժողովուրդներին կոփելու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Անդրֆեդերացիան պատվով կատարեց այդ խնդիրը, դարձավ ժողովուրդների լենինյան բարեկամության դարբնոց։ Անդրֆեդերացիան ինքնանպատակ չէր, այլ հզոր միջոց ՆԷՊ-ի պայմաններում գլուխ բարձրացրած նացիոնալիզմի ու շովինիզմի, ինչպես և օտարերկրյա իմպերիալիստների, վտարանդիական հակահեղափոխական մնացուկների դեմ պայքարելու մարտական զենք։

Անդրֆեդերացիան երկրամասում ամրապնդեց պրոլետարիատի դիկտատուրան՝ սովետական իշխանությունը, հաստատեց կայուն խաղաղություն, ապահովեց երեք հանրապետությունների սոցիալ-տնտեսական, մշակութային հզոր վերելքը։ Ծաղկեցին սոցիալիստական ազգերը, որոնք ունեին միասնական գաղափարախոսություն։

Անդրֆեդերացիայի տարիներին լիովին կերպարանափոխվեց երկրամասի դեմքը. ազգային երկպառակություններին փոխարինեց ժողովուրդների բարեկամությունը։ Հաջողությամբ կատարվեցին առաջին և երկրորդ հնգամյակները։ Իրականացան լենինյան պատգամները, ստեղծվեց էլեկտրաէներգիայի հզոր բազա։ Մեկը մյուսի ետևից շարք մտան Ռիոնգէսը ու Զորագէսը, Ձագէսն ու Քանաքեռգէսը, Խրամգէսը։

Երկրորդ հնգամյակի վերջին էլեկտրաէներգիայի արտադրությամբ Անդրֆեդերացիան ՍՍՀՄ-ում գրավում էր երկրորդ տեղը։

Վեր բարձրացան ծանր ինդուստրիայի գիգանտները։ Բուռն վերելք ապ-

րեցին Ադրբեջանի նավթարդյունաբերությունը, Վրաստանի մարգանեցի, քարածխի և լեռնահանքային արտադրությունը, Հայաստանում կառուցվեցին քիմիական և պղնձամշակման կոմբինատներ։ Աճեց բանվոր դասակարգի քանակական և որակական կազմը։ Եթե մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը Անդրկովկասի արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ կար 67,200 բանվոր, ապա 1936 թվականի հունվարի 1-ին հասավ 312 հազարի։

Ադրբեջանը, Հայաստանը, Վրաստանը ագրարային երկրից վերածվեցին ինդուստրիալ-ագրարայինի։ Բավական է նշել, որ Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1937 թ. մոտ 13 անգամ գերազանցեց 1913 թ. մակարդակը։

Աննախընթաց թռիչք կատարեց երկրամասի գյուղատնտեսությունը. ընդարձակվեց իռիգացիոն ցանցը, Կոլխիդան ու Մուղանը դարձան գյուղատնտեսական մթերքների շտեմարաններ։ Գյուղատնտեսության կոլեկտիվացումը, որը հաջողությամբ իրականացվեց Անդրկովկասում, խոր փոփոխություններ հարուցեց գյուղացիության կյանքում, նրանց հանեց լուսավոր ուղի։ Արդեն 1936 թվականին Անդրկովկասի ժողովրդական տնտեսության մեջ արդյունաբերության տեսակարար կշիռը կազմում էր 72 տոկոս, իսկ գյուղացիական տնտեսությունների շուրջ 80 տոկոսն ընդգրկված էր կոլտնտեսություններում։

1937 թվականին Ադրբեջանում կոլտնտեսություններում համախմբված էր գյուղացիության 86,5 տոկոսը, Հայաստանում՝ 88,7, իսկ Վրաստանում՝ 76,5 տոկոսը։ Անդրկովկասում վերջնականապես հաղթանակեց կոլտնտեսային կարգը։

1937 թ. Հայաստանում կային 1.074 կոլտնտեսություն, 16 սովխոզ, 24 մեքենատրակտորային կայան։ Կոլտնտեսությունների ցանքատարածություններն ընդարձակվեցին երկու և կես անգամ (տե՛ս «Советская Армения за 40 лет», էջ 85)։

Արմատական վերափոխություններ կատարվեցին մշակութային-գաղափարական կյանքում, հաղթանակեց կուլտուրական հեղափոխությունը, լիկվիդացվեց անգրագիտությունը, երկրամասը ծածկվեց դպրոցների, կուլտուր-լուսավորական, բարձրագույն ուսումնական հաստատությունների խիտ ցանցով։ 1937 թվականին Անդրկովկասում գործում էին 39 բարձրագույն դպրոց, 341 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն։ Զարգացան եղբայրական հանրապետությունների ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական, ինտերնացիոնալիստական մշակույթը, գիտությունը, գրականությունը։

Արտադրության և ապրանքաշրջանառության ոլորտից դուրս մղվեցին կապիտալիստական կացութաձևերը. վերացվեցին հարստահարող դասակարգերի մնացորդները, մնացին երկու բարեկամական դասակարգերը՝ բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը, ինչպես և նրանց ծոցից ելած սովետական ինտելիգենցիան։

Անդրֆեդերացիան աճեցրեց և դաստիարակեց ինտերնացիոնալիզմի ոգով տոգորված նոր կադրեր, հասարակական-քաղաքական աշխատողներ։

ՍՍՀՄ-ում, այդ թվում Անդրկովկասում, կատարված սոցիալ-քաղաքական մեծ տեղաշարժերը հնարավորություն ստեղծեցին 1936 թվականի դեկտեմբերին լիկվիդացնելու Անդրֆեդերացիան, որն արդեն կատարել էր իր պատմական դերը։ Ադրբեջանը, Հայաստանը, Վրաստանը, Սովետների համամիութենական 8-րդ համագումարի ընդունած հաղթանակած սոցիալիզմի սահմանադրության հիման վրա կազմավորվեցին որպես միութենական հանրապետություններ և անմիջականորեն մտան ՍՍՀՄ-ի կազմի մեջ։ Սկսվեց մի նոր, ավելի բարձր էտապ Անդրկովկասի սովետական հանրապետությունների պետականության զարգացման գործում։

## 4.

Անդրֆեդերացիայի փորձը պատմական մեծ նշանակություն ունի ազգային հարցի մարքսիստական-լենինյան լուծման ասպարեզում։ Չէ որ սովետա-



կան ֆեդերացիան, իբրև պետականության ձև, ոչ միայն նոր երևույթ էր, այլև արմատապես տարբերվում է բուրժուական ֆեդերացիայից։

Ի տարբերություն բուրժուական ֆեդերացիայի, որն ստեղծվում է հրով և սրով, պատերազմների, բռնության ու ստրկացման ճանապարհով, նացիոնալիզմի ու ռասայական անհավասարության, բյուրոկրատական միլիտարիստական ցենտրալիզմի հիման վրա, սովետական ֆեդերացիան սոցիալիստական հանրապետությունների պետական կառուցվածքի նոր ձև է։ Այն հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի, բազմազգ պետության կառուցման հնարավոր և նպատակահարմար ձև՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում։ Սովետական ֆեդերացիան, խարսխված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մարքս-լենինյան գաղափարախոսության, կամավոր միավորման ու հավասարության, ազգային տերիտորիալ կառուցվածքի և կառավարման դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների վրա։

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական համերաշխ ընտանիքում նորանոր հաջողությունների են հասել Անդրկովկասի ժողովուրդները, միասնական համերաշխ ձևով կառուցել զարգացած սոցիալիզմ։ Նրանք օրավուր հարստացնում են լենինյան բարեկամության ավանդույթները՝ հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, սոցիալիստական հայրենիքին, անձնվիրությունը, աշխատասիրությունը, փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը, դժվարությունները հաղթահարելու կարողությունները, միմյանց հաջողություններով ուրախանալու ազնիվ ձգտումը։

Անդրկովկասի ժողովուրդների ազգային վերածննդի, խաղաղության, սոցիալիստական նվաճումների կազմակերպիչը ՍՄԿԿ-ն է, լենինյան կուսակցության Ադրբեջանի, Հայաստանի, Վրաստանի հնագույն և մարտական ջոկատները։ Երկրամասի եղբայրական կոմկուսները միասին են պատմական ասպարեզ իջել, միասին են աշխատանքի ու պայքարի մարտական ուղի անցել, Անդրկովկասի աշխատավորությանը դաստիարակել պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով։ Նրանք միասին են հանդես գալիս և այժմ, գլխավորում աշխատավորության պայքարը, նրանց տոգորում եղբայրական բարեկամության հետագա ամրապնդման, հեղափոխական ավանդույթների պահպանման ու զարգացման, ինտերնացիոնալ դաստիարակության, ՍՄԿԿ ծրագրի, կուսակցության XXIV համագումարի որոշումների և գաղափարների անշեղ կենսագործման համար։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՋՈՂ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՄԵԹՈԴԸ

*ՍՄԿԿ հեղինակության աճը և մեր հասարակության կյանքում նրա դերի անընդհատ բարձրացումը, բնականաբար, ուժեղացնում են սովետական մարդկանց ձգտումը՝ ոչ միայն գաղափարապես, այլև կազմակերպչորեն կապվելու կուսակցության հետ, մտնելու նրա շարքերը։ Այդ են վկայում հետևյալ տվյալները։ Եթե ՍՄԿԿ XIX համագումարին հաջորդած չորս տարում կուսակցության անդամության թեկնածու են ընդունվել 1.071 հազար մարդ, ապա XXII և XXIII համագումարների միջև ընկած նույնպիսի ժամանակամիջոցում՝ 3.046 հազար մարդ, կամ գրեթե երեք անգամ ավելի։*

*Կուսակցական շինարարության արմատական հարցերից մեկը, որը կանխորոշում է կուսկազմակերպությունների ակտիվությունն ու մարտունակությունը, ՍՄԿԿ շարքերի աճն է։ Հասկանալի է, որ կոմունիստի կոչմանն անարժան մարդկանց ՍՄԿԿ շարքերն ընդունելու նույնիսկ մասնակի դեպքերը կարող են վնասել կուսակցության հեղինակությանը։ ՍՄԿԿ-ի համար սրբազան է Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ մեզ հարկավոր չեն ցուցադրական անդամներ, կուսակցությունը պետք է մշտապես հոգ տանի իր անդամներին որակական լավագույն հատկանիշներով օժտելու, նրանց գաղափարապես կոփելու մասին, որ կուսակցության համար գլխավորը ոչ թե ընդհանրապես նոր անդամների ընդունելությունն է, այլ իր շարքերի համալրումը կոմունիզմի գործին նվիրված, գիտակից մարտիկներով։*

*ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշեց, որ վերջին տարիներին կուսկազմակերպություններն սկսել են ավելի ուշադիր լինել կուսակցության մեջ կատարվող ընդունելությանը, բարձրացրել են պահանջկոտությունը նրա շարքերն ընդունվողների նկատմամբ։ «Դրա շնորհիվ ՍՄԿԿ-ի մեջ ընդունվողների թիվը որոշ չափով կրճատվել է։ Եթե XXII և XXIII համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ամեն տարի կուսակցության անդամության թեկնածու էր ընդունվում միջին հաշվով 760 հազար մարդ, ապա XXIII և XXIV համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում՝ միջին հաշվով 600 հազար մարդ»* (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը **ՍՄԿԿ XXIV** համագումարին, *Ե., 1971 թ., էջ 146)։*

*Ինչպես տեսնում ենք, ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցերի լուծման հիմքում ընկած են լենինյան դրույթները։ Դրանք սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ ունեն առաջնակարգ նշանակություն։*

*ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցության կարևորագույն հոգսը համարեց իր շարքերի որակական կազմի բարելավումը։ Համագումարն ընդգծեց, որ նոր անդամների ընդունելությամբ չափից ավելի տարվելը, այդ գործում ոչպահանջկոտությունը հակասում են կուսակցական շինարարության լենինյան սկզբունքներին։ Անհատական ընտրության սկզբունքի կիրառում, պահանջկոտության բարձրացում կուսակցության շարքերն ընդունվողների նկատմամբ, նրանց քաղաքական, գործնական և բարոյական հատկանիշների մանրազնին ստուգում, լիակատար հրաժարումն ընդունելության հապճեպությունից— ահա լենինյան այն դրույթները, որոնց համաձայն կուսկազմակերպությունները հոգ են տանում ՍՄԿԿ շարքերի աճի մասին։ Ցավոք, մի շարք կուսկազմակերպություններում խախտվում են այդ դրույթները։ Դրա հետևանքով երբեմն ՍՄԿԿ շարքերն են ընդունվել թույլ պատրաստականություն ունեցող, քաղաքականապես չհասունացած և անարժան մարդիկ։*

*Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմը մշակել է մի շարք գործնական միջոցառումներ այդ թերությունները վերացնելու համար՝ պահանջելով կուսկազմակերպություններից առավել ուշադիր վերաբերվել ՍՄԿԿ ընդունելությանը։ «Մեր խնդիրն է,— ասվում է ՍՄԿԿ XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— կարգավորիչ ներգործություն ունենալ կուսակցության շարքերի աճի վրա, անհատական ընտրության հիման վրա դրանք համալրել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության առավել արժանավոր ներկայացուցիչներով, հասնել այն բանին, որ ՍՄԿԿ-ի կազմը կուսակցությանը թույլ տա լավագույն ձևով լուծել իր առջև կանգնած խնդիրները» (նույն տեղում, էջ 146)։ Խոսելով այն մասին, որ հետևողականորեն կենսագործվում է կուսակցության սոցիալական կազմի մեջ բանվոր դասակարգին առաջատար տեղ տալու մասին ՍՄԿԿ XXIII համագումարի ցուցումը՝ ընկ. Բրեժնևը հավաստում է, որ կուսակցությունը կշարունակի այդ գիծը, որը համապատասխանում է նրա բնույթին, սովետական հասարակության մեջ բանվոր դասակարգի տեղին ու դերին։*

*Երկրի կուսկազմակերպություններում լուրջ գործ է կատարվել կուսակցության որակական կազմը բարելավելու համար, կիրառվել է ՍՄԿԿ շարքերի աճի անհատական ընտրության սկզբունքը։ ՍՄԿԿ XXIV համագումարի օրերին կուսակցության մեջ բանվորները կազմում էին 40,1, կոլտնտեսականները՝ 15,1, ծառայողները՝ 44,8 տոկոսը։ ՍՄԿԿ XXIII համագումարից XXIV համագումարն ընկած ժամանակամիջոցում կուսակցության շարքերը համալրվել են 3 միլիոն մարդով, որից գրեթե մեկ միլիոն 600 հազարը բանվորներ են։ Իսկ մի շարք արդյունաբերական մարզերում, ինչպես, օրինակ, Մոսկվայի, Լենինգրադի, Սվերդլովսկի, Գորկու, Դոնեցկի, Կարագանդայի, բանվորները կազմել են ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների 60—70 տոկոսը։*

*Կուսակցության այդ գիծը իրագործելու ասպարեզում նշանակալի հաջողության են հասել նրա բոլոր մարտական ջոկատները։ Այսպես, Հայաստանի կուսկազմակերպությունում, 1971 թ. սկզբներին, բանվորներն ու կոլտնտեսականները կազմում էին ՍՄԿԿ անդամների 55,5 տոկոսը, բարձրագույն և միջնակարգ կրթությամբ կոմունիստները՝ 62,9 տոկոսը։*

*Այդ ժամանակամիջոցում Հայաստանի կոմկուսակցությունն իր շարքերում միավորում էր 4.613 սկզբնական կուսկազմակերպություն, այդ թվում 1.119-ը արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային և կապի ձեռ-*

նարկություններում, 769-ը՝ կոլտնտեսություններում և սովխոզներում։ Սկզբնական կուսկազմակերպություններում ստեղծված էին 1.824 արտադրամասային կազմակերպություն և 3.089 կուսխմբեր։

Վերը նշված տվյալները վկայում են, որ կուսկազմակերպությունները մեծ ուշադրությամբ են վերաբերվել կուսակցության որակական կազմի բարելավման մասին ՍՄԿԿ XXIII համագումարի պահանջի իրականացմանը, և որ կուսակցության սոցիալական կազմում բանվոր դասակարգն առաջիկայում ևս պետք է զբաղեցնի առաջատար տեղ։ Արդեն այդ թվերը ինքնին խոսում են արդյունաբերական ձեռնարկությունների անկուսակցական ակտիվի շրջանում կուսկազմակերպությունների ծավալած բազմակողմանի գործունեության մասին։ Դրանք միաժամանակ վկայությունն են այն դրական պրոցեսի, որ կուսակցական աշխատանքի ծանրությունը տեղափոխվում է անմիջականորեն արտադրամաս ու բրիգադ, ուր ստեղծվում են նյութական արժեքներ և կատարվում են արտադրության պետական պլանները։ Այդ պրոցեսն արժանի է ամենայն ուշադրության, քանի որ այն բազմապատկում է սկզբնական կուսկազմակերպությունների հնարավորությունները՝ գաղափարապես և կազմակերպչորեն ապահովել իրենց ազդեցությունը կոլեկտիվի վրա՝ ամբողջությամբ վերցրած և յուրաքանչյուր աշխատավորի վրա՝ առանձին։

ՍՄԿԿ շարքերի ընդունելության նկատմամբ պահանջների բարձրացումը կուսակցության անդամության հարցի սոսկ մի կողմն է։ ՍՄԿԿ շարքերն ընդունվելով նոր է միայն սկսվում կոմունիստի կուսակցական կենսագրությունը։ Դրա համար, ՍՄԿԿ շարքերի ընդունելության բարելավման նկատմամբ հոգատարություն ցուցաբերելու հետ մեկտեղ, կուսկազմակերպությունները պարտավոր են իրենց ուշադրությունը բևեռել կոմունիստների դաստիարակության վրա, օգնել նրանց գաղափարական կոփվածությանը, բարձրացնել նրանց ավանգարդային դերն արտադրության մեջ, կոլեկտիվների հասարակական կյանքում։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո Հայաստանի կուսկազմակերպություններն սկսեցին ավելի մեծ ուշադրություն նվիրել կոմունիստների դաստիարակությանը, կոմունիստական շինարարության գործում նրանց ակտիվության զարգացմանը։ Իսկ դրանք կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման կարևոր պայմանն են։ Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսականներն ամեն տարի ապահովում են գյուղատնտեսական արտադրության զգալի աճ։ Նրանք կուտակել են խաղողի առատ բերք ստանալու ուսանելի փորձ։ Կոլտնտեսության հաջողություններն արդյունք են կուսկազմակերպության, կոմունիստների մտածված, արդյունավետ աշխատանքի։ Ղեկավարվելով ՍՄԿԿ կանոնադրության սկզբունքներով, խղճի մտոք, կոմունիստները ցույց են տալիս գիտակցական վերաբերմունքի օրինակ հանձնարարված գործի կատարման նկատմամբ, տանում են բազմակողմանի քաղաքական-դաստիարակչական աշխատանք, իրենց բրիգադի, ֆերմայի անկուսակցական ընկերներին կոչ անում՝ ակտիվ, անձնվեր գործունեությամբ բազմապատկել հանրային տնտեսության հարստությունը։

Կոմունիստների դաստիարակության, ակտիվության ու նախաձեռնության զարգացման վճռական պայմանը համարվում է ներկուսակցական դեմոկրատիայի և կուսակցական կյանքի նորմերի պահպանումը։ Դա ՍՄԿԿ յուրաքանչյուր անդամի և անդամության թեկնածուի հետևողական աշխատանքի



հաջողության գրավականն է։ Ներկուսակցական կյանքում յուրահատուկ տեղ է գրավում ընդհանուր ժողովը։ Դժվար է գերագնահատել դրա դերը կազմակերպության անդամի դաստիարակության գործում։ Ժողովը կոմունիստի ձևավորման ու գաղափարական կոփման ամենագործնական միջոցն է։ Հենց ժողովում է կոմունիստը ակտիվորեն, իր պարտքի լրիվ գիտակցությամբ ու պատասխանատվությամբ մասնակցում կուսակցության գործունեությանը։

Բարձրացնել կուսակցական ժողովի դերը, նշանակում է համառորեն ձգտել որոշումների անվերապահ կենսագործմանը։ ՍՄԿԿ անդամների ու անդամության թեկնածուների հետաքրքրասիրություն ժողովների նկատմամբ, գործնականություն, կոնկրետություն, քննադատություն ու ինքնաքննադատության բարձր մակարդակ, կոմունիստների ակտիվ մասնակցություն օրակարգի հարցերի քննարկմանը— ահա այն ամենը, ինչ բնորոշ են կուսակցական ժողովներին։

Յուրաքանչյուր կուսկազմակերպության առաջնահերթ խնդիրն է՝ հասնել այն բանին, որպեսզի ամեն մի կուսժողով դառնա կոմունիստների դաստիարակության դպրոց։ Կուսժողովում հարկավոր է քննարկել կոմունիստների քաղաքական մակարդակի բարձրացմանը, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի ոգով նոր մարդու դաստիարակությանը, արտադրության կուլտուրային ու տեխնիկական զինվածությանը, արտադրանքի որակի ու հուսալիության ապահովմանը վերաբերող հրատապ հարցեր։ Ժողովների օրակարգում պետք է լինեն նաև կոմունիստների կողմից կանոնադրական պարտականությունների կատարմանը և իրավունքների պահպանմանը նվիրված խնդիրներ։

Իրենց ժողովներում վճռելով արտադրական խնդիրներ՝ կոմունիստները պարտավոր են դրանց մոտենալ կուսակցական դիրքերից, դրանք լուծելու համար մշակել կուսակցական կազմակերպական, քաղաքական-գաղափարական աշխատանքի գործնական միջոցառումներ, որոշել յուրաքանչյուր կոմունիստի կոնկրետ դերը ժողովի որոշման կատարման գործում։

Ղափանի պղնձամոլիբդենային կոմբինատի արտադրամասերում, հարստա-
ցուցիչ ֆաբրիկայի հանքերում գործում են տասնյակ արտադրամասային կուս-
կազմակերպություններ ու կուսխմբեր։ Հենվելով դրանց վրա՝ կուսկոմիտեն
մշակում է կոմպլեքսային հարցեր, որոնք կապված են հանքագործների շրջա-
նում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի, պետական
առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարման
հետ, ուղղություն է տալիս կոմունիստների գործունեությանը, հաջողությամբ
ապահովում արտադրամասային կուսկազմակերպությունների մարտունակու-
թյունը։ Կոմբինատի կուսկազմակերպության ուժեղացումը նպաստել է արտա-
դրական հաջողություններին։ Հարստացուցիչ ֆաբրիկայում կիրառվել են
տեխնիկական մի շարք նորույթներ, որոնք հնարավորություն են տվել 20 տո-
կոսով բարձրացնելու պղնձի պարունակությունը խտահանքի (կոնցենտրատ)
մեջ։ Կոմունիստների նախաձեռնությամբ ջարդման տեղամասում տեղակայ-
ված ագրեգատի շնորհիվ նշանակալիորեն բարձրացել է աշխատանքի արտա-
դրողականությունը։

Բերված օրինակից կարելի է անել մեկ հետևություն. արտադրամասային կուսկազմակերպությունների դերի ու մարտունակության բարձրացումը համարվում է կուսակցության դիրեկտիվների, պետական առաջադրանքների ու

սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման պարտադիր պայմանը։

Ներկա ժամանակաշրջանում մեծ նշանակություն է ստանում կուսակցական ղեկավարությունը հասարակական կազմակերպությունների նկատմամբ։ Աշխատավորների հետ միասին գործում են միլիոնավոր կոմունիստներ, որոնք միավորված են հազարավոր կուսկազմակերպություններում։ Իրենց ամենօրյա գործունեության ընթացքում նրանք հենվում են աշխատավորների մասսայական կազմակերպությունների՝ սովետների, արհմիությունների, կոմերիտմիության վրա։ Ինչպիսի կոնկրետ գործի էլ ձեռնամուխ լինի կուսկազմակերպությունը, նա պետք է հստակ որոշի արհմիության, կոմերիտմիության և հասարակական մյուս կազմակերպությունների տեղը կյանքի կողմից առաջադրված խնդիրների իրականացման համար մղվող պայքարում։ Հասարակական կազմակերպությունների, նրանց ակտիվի գործունեության արդյունավետությունը պայմանավորված է կուսակցական ղեկավարության մակարդակի բարձրացմամբ, այդ կազմակերպություններում աշխատող կոմունիստների կողմից իրենց կուսակցական հանձնարարությունների կատարման նկատմամբ գիտակցական վերաբերմունքով։

Կուսկազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկը աշխատավորների քաղաքական-գաղափարական բազմակողմանի դաստիարակությունն է։ Այդ աշխատանքը համարվում է կուսակցական գործունեության սկզբունքային կողմը արտադրության, կրթության, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում։

ՍՄԿԿ XXIV համագումարը կուսկազմակերպություններին պարտավորեցրեց աշխատավորների դաստիարակությունը ենթարկել գլխավոր նպատակին՝ նրանց մարքս-լենինյան գիտելիքների խորացմանը, կյանքի երևույթների նկատմամբ դասակարգային մոտեցման մշակմանը, մասսաների մոբիլիզացմանը կոմունիստական շինարարությանն ակտիվ մասնակցելու համար։

Հանրապետության կուսկազմակերպությունները ձգտում են բարձրացնել աշխատավորների դաստիարակության մակարդակը, ուժեղացնել նրա ներգործունությունը։ Այդ աշխատանքի արդյունքները դրսևորվում են մասսաների արտադրական ակտիվության ու նախաձեռնության զարգացման, հասարակական կյանքին նրանց ակտիվ մասնակցության մեջ։ Լենինականի տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայում ավելի քան 150 մանածագործներ աշխատում են կոմունիստներ Համիկ Գրիգորյանի և Կլարա Սարգսյանի մեթոդով, որոնք, գործելով խղճի մոտք և ղեկավարվելով արտադրության շահերով, պատրաստակամություն հայտնեցին, նորմայով նախատեսված 18-ի փոխարեն, սպասարկել մանածագործական 20 հաստոց։ Նորարարներն իրենց խոստումն իրականացրին պրակտիկայում։ Այդ առաջավոր կոմունիստներին հետևեցին ուրիշները։

Մեր կուսակցության անդամների ստեղծագործական ակտիվության զարգացման համանման օրինակները շատ են։ Գործարաններում ու ֆաբրիկաներում նրանք տոն են տալիս արտադրական աշխատանքին, հանդես գալիս որպես առաջադիմական նախաձեռնությունների հեղինակներ, որպես պետական պլանների ու կոլեկտիվի ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման, գիտա-տեխնիկական առաջընթացի արագացման համար պայքարող ակտիվ մարտիկներ։



Սկզբնական կուսկազմակերպությունը մասսաների շրջանում տարվող քաղաքական աշխատանքի կազմակերպիչն է, որն ամեն կերպ նպաստում է մարդկանց քաղաքական գիտակցության աճին։ Առանց դրա անհնար է հաջողությամբ լուծել ձեռնարկության, կոլտնտեսության և սովխոզի առջև ծառացած խնդիրները։

Կուսկազմակերպությունների մարտունակությունը նշանակալի չափով պայմանավորված է դրանք ղեկավարող մարդկանց հասունության մակարդակով, նրանց փորձի և կազմակերպչական ընդունակությունների աստիճանով։ Դրա համար կուսակցության քաղկոմների ու շրջկոմների կարևոր խնդիրներից են համարվում սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ճիշտ ընտրությունը և ուսուցման պատշաճ կազմակերպումը։ Վերջին տարիներին բարելավվել է կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմը։ Այսպես, 1972 թվականի սկզբներին Հայաստանի սկզբնական կուսկազմակերպությունների 4.731 քարտուղարներից 2.616-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն։ Նշենք, ի դեպ և այն դրական փաստը, որ կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների 126 քարտուղարներից 122-ը ունեն բարձրագույն կրթություն։

Սկզբնական կուսկազմակերպությունները կուսակցական աշխատանքի վճռական տեղամասն են։ Նրանց գործունեության կատարելագործումը չպետք է դուրս մնա կուսակցական մարմինների օրակարգից։ Անհրաժեշտ է մշտապես հոգ տանել կուսկազմակերպությունների ղեկավարման մակարդակի բարձրացման մասին, ուշադիր վերլուծել նրանց գործունեությունը, հասնել այն բանին, որպեսզի նրանք դառնան մասսաների մարտական ղեկավարներ՝ կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման համար մղվող պայքարում։

Կուսակցական կազմակերպությունների առջև ծառացած են մեծ ու պատասխանատու խնդիրներ։ Գլխավորը, որի վրա պետք է բևեռվի կոմունիստների, արտադրության նորարարների, մասնագետների, բոլոր աշխատավորների ուշադրությունը, ռեզերվների որոնումն ու օգտագործումը, արտադրության աճի և նրա արդյունավետության բարձրացումն են։ Մեր այսօրվա ռեզերվներն են՝ սարքավորումների լավագույն օգտագործումը, առավել առաջնակարգ տեխնիկայի ներդրումն ու արտադրության արդյունավետության բարձրացումը, կապիտալ ներդրումների փոխհատուցումը, նոր արտադրական կարողությունների արագ գործարկումը։

Կուսակցական ղեկավար մարմինները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է ուժեղացնեն մասսաների շրջանում տարվող քաղաքական և կազմակերպչական աշխատանքը, մոբիլիզացնեն նրանց ուժերը՝ պետական պլանները և արդյունաբերական, շինարարական, տրանսպորտի և գյուղատնտեսական բոլոր կոլեկտիվների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու և գերակատարելու համար։ Միայն այդպիսի հարցադրումը իրականում կարող է նպաստել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների հաջող կենսագործմանը, սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը կոմունիստական շինարարության ժամանակակից էտապում։

Հ. Ս. ՕԳԱՆԵՍՈՎ

# ԳՈՐԾԱՐԱՐ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության իններորդ հնգամյակի դիրեկտիվներով, ՍՄԿԿ XXIV համագումարը ժողովրդի առջև դրեց վիթխարի խնդիրներ, որոնց լուծման համար կպահանջվեն ուժերի մեծ լարում, կազմակերպվածություն և ստեղծագործական ակտիվության զարգացում։ Հասկանալի է, որ կոմունիստական շինարարության արդի պայմաններում պետք է կատարելագործվեն նաև սոցիալիստական մրցության կազմակերպման ձևերն ու մեթոդները։ Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտկոմը «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշման մեջ ընդգծում է, որ սոցիալիստական մրցության հետագա զարգացումը և նրա կատարելագործումը մեր զարգացման կարևորագույն պայմանն են։*

*Սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպման առաջին նախապայմաններից են ստանձնած պարտավորությունների կոնկրետությունն ու ռեալությունը, ներքին ռեզերվների ու հնարավորությունների ճիշտ հաշվառումը, մրցության մեջ աշխատավորական լայն մասսաների ընդգրկումը։*

*Կիրովականի հիմնարկ-ձեռնարկությունների կոլեկտիվները սոցիալիստական պարտավորություններն ստանձնում են ոչ թե հապճեպ, այլ մանրակրկիտ ու համակողմանի նախապատրաստական աշխատանքից հետո։*

*Եթե սոցիալիստական տնտեսության ոչ հեռավոր անցյալում (երբ ապրանքների խիստ կարիք էր զգացվում) սոցիալիստական մրցության կարևորագույն խնդիրներից մեկը արտադրանքի ընդհանուր ծավալի մեծացումն էր, ապա այժմ խնդիրներն այլ են։ Ճիշտ է, նախատեսված է արտադրանքի ծավալի համեմատական աճ, սակայն շեշտը դրվում է արտադրանքի տեսակների բազմացման և որակի բարձրացման վրա։ Այժմ կարևորագույն խնդիրներից մեկը կապիտալ ներդրումների ամեն մի ռուբլու դիմաց առավելագույն փոխհատուցում ստանալն է, արտադրության արդյունավետության զգալի բարձրացումը։ Այստեղից էլ հարկ է եզրակացնել, որ արդի պայմաններում սոցիալիստական մրցությունը պետք է նպաստի արտադրության առջև ծառացած այդ կարևոր պրոբլեմների հաջող լուծմանը։*

*Քաղաքի կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները սիստեմատիկաբար հետևում են, որպեսզի կոլեկտիվները սոցիալիստական կոնկրետ պարտավորություններ ստանձնեն արտադրանքի տեսակների բազմացման, որակի բարձրացման, արտադրական պրոցեսների մեքենայացման*



*ու ավտոմատացման, ներքին ռեզերվների հայտաբերման ու օգտագործման, անարտադրողական ծախսերի կրճատման և այլ բնագավառներում։*

*Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում քիչ նշանակություն չունեն դրա ձևերի ու մեթոդների կատարելագործումը, բարոյական ու նյութական խթանման միջոցների ճիշտ զուգակցումը։ Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատում ամեն տարի, նրա ստեղծման տարեդարձի օրը, «Աշխատանքի վետերանի» կոչում են շնորհում և նյութական խրախուսանքի արժանացնում ձեռնարկության երկարամյա անբասիր աշխատող քիմիագործներին, նոր գործի ընդունվող երիտասարդ բանվորները վետերանների առջև հանդիսավոր պայմաններում երդվում են բարձր պահել բանվորական պատիվը, ստանում իրենց աշխատանքի սիմվոլիկ գործիքը և հուշանվեր։ Այս ձևերն զգալիորեն նպաստում են երիտասարդության շրջանում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակությանը։*

*Քիմիական մանրաթելի գործարանում մրցություն է կազմակերպված անհատ բանվորների, բրիգադների, արտադրամասերի միջև, հաղթողների համար սահմանվել են փոխանցիկ դրոշներ, «Հոկտեմբերյան մրցության դափնեկիր» կոչումը։ Այդ կոչումը շնորհվում է Հոկտեմբերյան հեղափոխության պատվին ծավալված մրցության մեջ հաղթող լավագույն աշխատողներին։ Դափնեկիրները պարգևատրվում են 100 ռուբլով, նրանց 13-րդ աշխատավարձի հաշվարկման գործակիցը բարձրացվում է 0,35-ով, պատվո գրքում գրանցված և պատվո տախտակին արժանացած բանվորներինը՝ 0,2-ով։ Նյութապես շահագրգռվում են նաև լավագույն մասնագետը և ռացիոնալիզատորի կոչմանն արժանացածները։*

*Ճշգրիտ հաստոցների գործարանի կուսակցական, արհմիութենական կազմակերպությունները հատուկ ուշադրություն են նվիրում թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար սոցիալիստական մրցության կազմակերպմանը։ Այստեղ հասարակական հիմունքներով գործում են կոնստրուկտորական, տեխնոլոգիական և տնտեսագիտական վերլուծության բյուրոներ, նորարարական առաջարկությունների ներդրման արտադրամաս։ Եվ, պատահական չէ, որ գործարանի կոլեկտիվը տարիներ շարունակ սիստեմատիկաբար կատարում է ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, իսկ ճշգրիտ հաստոցների մի շարք նմուշներ միջազգային ցուցահանդեսներում ու տոնավաճառներում արժանացել են ոսկե մեդալների։*

*«Ավտոգենմաշ» գործարանում ծավալված մրցության հիմնական նպատակն է բարձրացնել արտադրության արդյունավետությունը։ Լավագույն խառատ, ֆրեզերագործ և այլ մասնագիտությունների կոչմանն արժանանալու համար կազմակերպվող մրցույթներն ավանդական են դարձել այստեղ։ Տրիկոտաժի ֆաբրիկայում մրցություն է ծավալվում «Վաստակավոր տրիկոտաժագործի» կոչման համար, որին արժանանալու են նոր հնգամյակի տարիներին հատուկ ծառայություններ մատուցած աշխատողները՝ մշակված պայմանների համաձայն։ Այդ բարձր կոչմանն արժանացած մարդիկ կստանան կրծքանշան, դիպլոմ և դրամական պարգև։*

*Սոցիալիստական մրցության նման ձևերն ու մեթոդները, բարոյական ու նյութական խթանման միջոցների ճիշտ զուգորդումը գործարար մթնոլորտ են ստեղծում մրցության մեջ, ընդլայնում այն, անհրաժեշտ պայմաններ ապահովում աշխատավորական լայն մասսաների ստեղծագործական նախաձեռ-*

նությունների համար։ Եվ, պատահական չէ, որ քաղաքի աշխատավորության գրեթե 80 տոկոսն ընդգրկված է սոցիալիստական մրցության տարբեր ձևերի մեջ, իսկ առանձին արդյունաբերական ձեռնարկությունների (քիմիական մանրաթելի, «Ավտոմատիկա», տաքացուցիչների գործարաններ) կոլեկտիվների գրեթե բոլոր անդամները մասնակցում են մրցությանը։

Քաղաքի արտադրական ձեռնարկություններում լայն թափ է ստացել կոմունիստական աշխատանքի շարժումը։ Հազարավոր անհատ աշխատողներ, բրիգադաներ ու կոլեկտիվներ արդեն արժանացել են այդ բարձր կոչմանը։ Քիմիական կոմբինատում կոմունիստականի կոչմանն են արժանացել 1365 մարդ, 16 արտադրամաս, գործամաս ու բաժանմունք, 67 հերթափոխություն և բրիգադա, իսկ քիմիական մանրաթելի գործարանում՝ 750 մարդ, 16 բրիգադա, 3 հերթափոխ, 2 արտադրամաս և այլն։

Մրցության բազմազանությունը, նրա մասսայականությունը միշտ էլ նպաստավոր պայմաններ են ստեղծում աշխատավորության ստեղծագործական նախաձեռնության զարգացման համար։ Ահա թե ինչու քաղաքի բազմաթիվ կոլեկտիվներ, բրիգադաներ, առանձին աշխատողներ ավելի ու ավելի հաճախ են հանդես գալիս լավագույն նախաձեռնություններով։ «Ավտոմատիկա» գործարանի կոլեկտիվը, օրինակ, անցած տարի կոնկրետ պարտավորություններ ստանձնելով, կոչ արեց քաղաքի արտադրական ձեռնարկություններին՝ մրցություն ծավալել «Գործարանը բարձր արտադրողականության և հասարակական օրինակելի կարգ ու կանոնի ձեռնարկություն» դարձնելու համար։ Քաղկոմի բյուրոն հավանություն տվեց այդ նախաձեռնությանը և հանձնարարեց քաղաքի բոլոր կուսկազմակերպություններին՝ հետևելու «Ավտոմատիկա» գործարանի օրինակին։

«Հայէլեկտրալույս» միավորման Կիրովականի մասնաճյուղի կոլեկտիվը, ՀԿԿ Կենտկոմի երկրորդ պլենումի որոշումը կենսագործելու նպատակով, կոչ արեց քաղաքի արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվներին՝ մրցություն ծավալել Գուգարքի շրջանի կոլտնտեսություններին ու սովխոզներին արդյունավետ օգնություն ցույց տալու համար։ Դա ևս արժանացավ կուսքաղկոմի հավանությանը, և մենք քաղաքի մասշտաբով սահմանեցինք «Կայծ» թերթի փոխանցիկ դրոշ՝ ամեն տարի մրցության հաղթողներին շնորհելու համար։

Ուշագրավն այն է, որ արտադրության արդյունավետության նախաձեռնություններով հանդես են գալիս ոչ միայն կոլեկտիվները, այլև առաջավոր բանվորներն ու բանվորուհիները։ Նրանք մրցությանը տալիս են նոր որակ, առաջ մղում արտադրությունը։ Քիմիական մանրաթելի գործարանի բանվորուհի, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ն. Ջաղորկինան հանդես եկավ հնգամյակի բոլոր տարիներին արտադրողականությունը 20 տոկոսով բարձրացնելու, սպասարկման գոտու ավելացման ու որակի բարձրացման հաշվին հնգամյակը 4 տարում կատարելու կոչով, բանվորուհի Է. Կոխլիկյանը՝ «Աշխատել առանց խոտանի» նախաձեռնությամբ։ «Հնգամյակը 4 տարում» կոչով հանդես եկան նաև տրիկոտաժի ֆաբրիկայի կարող բանվորուհիներ Գ. Հովհաննիսյանը, Ջ. Ռոմյանը, գործող բանվորուհիներ Ա. Տեր-Պետրոսյանը, Ա. Մատինյանը և ուրիշներ։

Կարի ֆաբրիկայի բանվորուհի, կոմերիտական խմբավար Ա. Թոմբալյանի՝ «Յուրաքանչյուր ամսվա առաջադրանքը 120—125 տոկոսով կատարելու



և միայն բարձրորակ արտադրանք թողարկելու» նախաձեռնությունը լայն ար-
ձագանք ստացավ քաղաքի ձեռնարկությունների բանվորների շրջանում։ «Հայ-
էլեկտրալույս» միավորման մասնաճյուղի հավաքման արտադրամասի՝
Վ. Դավթյանի ղեկավարած կոմերիտական բրիգադան դարձավ «Հնգամյակը
50 ամսում» նախաձեռնության հեղինակը և այլն։
Աշխատավորության նախաձեռնության զարգացմանը նպաստում են առա-
ջավորների, լավագույն աշխատողների փորձի պատշաճ պրոպագանդումն ու
մասսայականացումը։ Այդ նպատակով ձեռնարկություններում պատի թերթե-
րի, հատուկ ցուցափեղկերի, ագիտատորների միջոցով լայն հրապարակայ-
նություն է ապահովվում լավագույն նախաձեռնությունների ու աշխատանքի
առաջավոր փորձի տարածման համար։ Քաղաքային «Կայծ» թերթն իր էջերում
և «Կիրովականյան ռադիոկյանքն» իր հաղորդումներում հանգամանորեն
պատմում են արտադրական կոլեկտիվների ու առանձին մարդկանց լավ գոր-
ծերի մասին, կազմակերպում տարբեր ձեռնարկությունների աշխատավորու-
թյան ներկայացուցիչների փոխայցելություններ, հանդիպումներ։
Սոցիալիստական մրցության հաջող կազմակերպումը, նրա արդյունավե-
տությունը մեծապես կախված են մրցության արդյունքների ժամանակին ու
ճիշտ ամփոփումից, այդ գործում աշխատավորության լայն մասնակցությու-
նից, արդյունքների հրապարակայնության ապահովումից։ Շատ կարևոր է, որ
ամեն մի մրցող, լինի անհատ, բրիգադա, թե կոլեկտիվ, մասնակցի մրցու-
թյան արդյունքների ամփոփմանը, ճիշտ իմանա, թե ինչո՞ւ ինքը ետ մնաց,
ինչպե՞ս, աշխատանքի ինչպիսի՞ եղանակով իր մրցակիցն առաջնություն շա-
հեց և այլն։
Մրցության ծավալման գործում հույժ կարևոր նշանակություն ունի նաև
մրցությունում հաղթողների ճիշտ որոշումը։ Փորձը ցույց է տվել, որ երբեմն,
առանց բավարար չափով հաշվի առնելու կոլեկտիվի կամ նրա անդամների
իսկական աշխատանքային ներդրումը, խրախուսանքի են արժանանում մըր-
ցության ամենևին ոչ ամենաառաջավոր մարդիկ։ Դա խիստ բացասաբար է
անդրադառնում մրցության ընդլայնման ու կազմակերպման բարելավման
վրա։ Կուսկազմակերպությունների խնդիրն է հսկողություն սահմանել, որպես-
զի կանխվեն նման երևույթները։ Այս առումով մեզ մոտ զգալի գործ է կա-
տարված։
Քաղաքի հիմնարկ-ձեռնարկություններում սոցիալիստական մրցության
արդյունքներն ուսումնասիրվում են հատուկ հանձնաժողովների միջոցով,
մրցող կողմերի մասնակցությամբ։
Կուսակցական, արհմիութենական կազմակերպություններն օգտագործում
են ագիտացիայի և պրոպագանդայի բոլոր ձևերը՝ մրցության արդյունքների
լայն հրապարակայնությունն ապահովելու համար։ Հաղթող կոլեկտիվներին
շնորհվում են քաղկոմի և քաղսովետի հինգ, ինչպես նաև մրցակից քաղաքնե-
րի չորս դրոշներ։
Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների և արտադրական միուս
կազմակերպությունների կոլեկտիվների սոցիալիստական մրցության ընդլայն-
մանը, դրա արդյունավետությանն զգալիորեն նպաստում է Անդրկովկասի Բա-
թումի, Սուխումի, Սումգայիթ, Ռուսթավի եղբայրական քաղաքների հետ
ծավալված մեր ավանդական մրցությունը։ Աշխատավորության պատվիրա-
կությունների փոխադարձ այցելությունները, պարտավորությունների համա-

տեղ քննարկումները մեծ օգուտ են բերում մրցության լավագույն ձևերի ու մեթոդների, աշխատանքի առաջավոր փորձի ուսումնասիրման ու ներդրման, ժողովուրդների անխախտ բարեկամության ամրապնդման գործին։

Մրցության արդյունավետությունը բարձրացնելու համար միայն առաջավորների փորձի պրոպագանդումն ու արմատավորումը բավարար համարել չի կարելի։ Քիչ կարևոր չեն պայքարը վատ բարքերի դեմ, կոլեկտիվի անբարեխիղճ, անկարգապահ, ետ մնացող անդամների բացահայտումը, նման մարդկանց կոլեկտիվ դաստիարակության կազմակերպումը։

Սոցիալիստական մրցության առաջավորների օրինակով կոլեկտիվի բոլոր անդամներին պետք է դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով։ Այդ նպատակով քաղաքի մի շարք կազմակերպություններում ներդրվել են հետաքրքրական ձևեր։ «Ավտոգենմաշ» գործարանում գործում է «Ո՞վ է մեզ խանգարում ռիթմիկ աշխատել» ցուցափեղկը, որտեղ ամեն օր նշվում է, թե որ աշխատողի, բաժնի, կամ արտադրամասի պատճառով է գործը տուժել։ Արհեստական մետաքսաթելի գործարանում, ի տես բոլորի, ամեն օր ցուցադրվում են յուրաքանչյուր բանվորի պլանի կատարողականը, աշխատանքից բացակայելը կամ ուշանալը, կարգապահության խախտման այլ փաստեր, մեկ ուրիշ տեղ, հատուկ ցուցափեղկում՝ խոտան արտադրանքի նմուշը, նշվում այն թողարկողի անուն-ազգանունը։ Երգիծական պատի թերթերում խարազանվում են տեխնոլոգիական ռեժիմը խախտողները, հումքը շռայլողները, հակահասարակական արարք կատարողները և այլն։ Իհարկե, այս բոլորը հաշվի է առնվում նաև աշխատողների նյութական ու բարոյական խրախուսանքի կիրառման ժամանակ։

Գործը մեծապես շահում է, երբ կուսկազմակերպությունն ապահովում է յուրաքանչյուր կոմունիստի ավանգարդային դերը սոցիալիստական մրցության մեջ, լրջորեն զբաղվում կոլեկտիվի ետ մնացող անդամների հարցով, լիովին օգտվում ադմինիստրացիայի գործունեության վերահսկման իրավունքից, քաղաքական աշխատանքի բազմազան ձևերը նպատակամղում մրցության ընդլայնմանն ու զարգացմանը։

Մրցության բարելավման և աշխատավորության արտադրության ղեկավարմանը մասնակից դարձնելու անհրաժեշտ պայմաններից մեկը կոլեկտիվի անդամների մասնագիտական ու տնտեսական գիտելիքների խորացումն է։ Հասկանալի է՝ արտադրությունը ղեկավարելու համար պետք է համապատասխան գիտելիքներ ունենալ։ Եվ պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ որոշմամբ անդրադարձավ նաև աշխատավորության լայն մասսաների տնտեսագիտական ուսուցման հարցին։ Այդ տեսակետից որպես բնորոշ օրինակ կարելի է նշել քիմիական մանրաթելի գործարանի տնտեսագիտական ժողովրդական համալսարանը, որն արդեն վեցերորդ տարին է, ինչ գործում է. այստեղ սովորում են շուրջ 150 ունկնդիրներ։ Համալսարանի պարապմունքները վարում են հանրապետության ճանաչված տնտեսագետներ, քաղաքի ձեռնարկությունների ղեկավարներ, գլխավոր ինժեներներ, լավագույն մասնագետներ։ Համալսարանի ունկնդիրների մասնակցությամբ կազմակերպվել են գիտապրակտիկ կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ։ Քաղաքի գրեթե բոլոր ձեռնարկություններում այս տարի կազմակերպվել է կոմունիստական աշխատանքի 132 դպրոց, որոնցում ընդգրկված է շուրջ 2500 մարդ։ Գործում է տնտեսագիտական և իրավագիտական հարցերն ուսումնասիրող 5 ժողովրդական հա-



մալսարան՝ 720 ունկնդիրներով և այլն։ Աշխատավորության տնտեսագիտական ուսուցումը մեծ հնարավորություններ է ստեղծում՝ սոցիալիստական մրցության կազմակերպումը բարելավելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու, մրցության մեջ ձևամոլությունն ու բյուրոկրատական աղավաղումները վերացնելու համար։

Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում մեր ձեռք բերած որոշակի փորձը հնարավորություն տվեց նախընթաց տարիներին զգալի հաջողությունների հասնել արտադրական ծրագրերի կատարման ասպարեզում։ Քաղաքի արդյունաբերողները 1970 թ. պետական առաջադրանքները կատարեցին 102,6 տոկոսով՝ տալով ավելի քան 5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ 32 արդյունաբերական ձեռնարկություններից 5-ն արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվոգրերի, 7-ը՝ հանրապետական հոբելյանական պատվոգրերի և հուշամեդալների, իսկ 6-ը՝ արտադրության բարձր կուլտուրայի համար՝ դիպլոմների։

Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները լավ աշխատեցին նաև նոր հնգամյակի առաջին տարում։ 1971 թ. արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը նրանք, ամբողջությամբ վերցրած, կատարեցին դեկտեմբերի 20-ին և երկրին տվեցին 4,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Ընդ որում, նախորդ տարվա համեմատությամբ, իրացված արտադրանքի ծավալը մեծացավ 7,8 տոկոսով կամ ավելի քան 15,5 միլիոն ռուբլով, որից մոտ 10 միլիոնը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Հաջողությամբ կատարվեցին նաև տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշները։

ՍՄԿԿ Կենտկոմի «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը բոլոր կուսակցական կազմակերպություններից պահանջում է սոցիալիստական մրցությունը կազմակերպել այնպես, որ ապահովվի կուսակցության XXIV համագումարի կողմից առաջադրված վիթխարի խնդիրների լուծումը։ Կուսքաղկոմի պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի որոշման քննարկումը ցույց տվեց, որ, չնայած սոցիալիստական մրցության գործում ձեռք բերված դրական արդյունքներին, քաղաքի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպությունների գործունեության մեջ կան թերություններ ու բացեր։

Փոքրաթիվ կազմակերպություններում (կենցաղ-սպասարկման կոմբինատ, կոշիկի ֆաբրիկա, կուլտուրայի մինիստրության արտադրական կոմբինատ, կարի անհատական պատվերների ֆաբրիկա և այլն) սոցիալիստական մրցությունն առանձին դեպքերում կրում է ձևական բնույթ, մրցության արդյունքները ժամանակին չեն քննարկվում, առաջավորները, ինչպես հարկն է, չեն խրախուսվում։ Շինարարական կազմակերպություններում հետևողական պայքար չի կազմակերպվում նյութերի ու միջոցների խնայողության, շինարարության որակի բարձրացման համար։ Հատկապես ցածր է սննդի արդյունաբերության ձեռնարկությունների (հացի, գարեջրի, լիմոնադի, երշիկեղենի գործարաններ) թողարկած արտադրանքի որակը։ Քաղաքի ձեռնարկությունների մի զգալի մասը չի կատարում արտադրատեսակների թողարկման առաջադրանքը։ Դեռևս ցածր է կենցաղսպասարկման ձեռնարկությունների ու առևտրի կազմակերպությունների սպասարկման կուլտուրան։ Մի շարք ձեռնար-

կություններում մեծ թիվ են կազմում աշխատաժամանակի կորուստները, որոնց կրճատումն արտադրության զարգացման մեծ ռեզերվ է։ Այդ ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները լրջորեն չեն զբաղվում արտադրության բարելավման հարցերով, գործարար մրցություն չեն կազմակերպում արտադրանքի որակի և սպասարկման կուլտուրայի բարձրացման, ներքին ռեզերվների հայտաբերման ու օգտագործման համար, մրցության արդյունքները ժամանակին չեն քննարկում, լավագույն բանվորներին չեն խրախուսում, չեն արմատավորում աշխատանքի առաջավոր փորձը։ Հետևանքը պարզ է. լոկ վարչարարությամբ լավ արդյունքի չես հասնի։

Կիրովական քաղաքի աշխատավորները, հենվելով ութերորդ հնգամյակում ձեռք բերած հաջողությունների, նախահամագումարյան ու հետհամագումարյան սոցիալիստական մրցության կազմակերպման փորձի վրա, մեծ խանդավառությամբ մասնակցում են ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներից բխող վիթխարի խնդիրների կենսագործման համար մղվող համաժողովրդական պայքարին։ Մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք գտավ մեր քաղաքի աշխատավորության շրջանում։ Ամենուրեք սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել իններորդ հնգամյակի երկրորդ տարվա արտադրական ծրագիրը պատվով կատարելու համար։ Մեր քաղաքի արդյունաբերողները խոստացել են իններորդ հնգամյակի պետական առաջադրանքը կատարել 1975 թ. նոյեմբերի 29-ին, իսկ 1972 թվականինը՝ ժամկետից հինգ օր շուտ՝ դեկտեմբերի 25-ին։ Նրանք նախատեսել են աշխատանքի արտադրողականության բարձրացման տարեկան առաջադրանքը գերակատարել երկու, իսկ արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը՝ մեկ տոկոսով։ Շինարարները պարտավորվել են պլանից ավելի շահագործման հանձնել 5000 քմ օգտակար բնակտարածություն, մեկ դպրոց և քաղաքային շատ օբյեկտներ։ Արտադրության արդյունավետության բարձրացման հաշվին օգուտների պետական առաջադրանքը կգերակատարվի 600 հազար ռուբլով։

Արտադրական կոլեկտիվներն ստանձնել են նաև լայն սպառման ապրանքների արտադրությունը և դրանց տեսակներն ավելացնելու, արտադրանքի որակը բարձրացնելու և գիտա-տեխնիկական պրոգրեսն արագացնելու պարտավորություններ։ Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն կմեծանա արտադրանքի ծավալը։

Այս և մյուս պարտավորությունները կատարելու համար մեր քաղաքի կուսկազմակերպությունները հետագայում ևս կկատարելագործեն մրցության ձևերն ու մեթոդները, կպաշտպանեն ու կզարգացնեն աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունը։ Մենք պարտավոր ենք հիշելու Վ. Ի. Լենինի այն հայտնի միտքը, որ սոցիալիստական մրցությունը մեր առաջընթացի կարևոր երաշխիքն է, նրա շարժիչ ուժը։ Մեր առաջնահերթ խնդիրն ու պարտքն է՝ ճիշտ ու խելացի օգտվել այդ ուժից։

Լ. Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ
ՀԿԿ Կիրովականի քաղկոմի քարտուղար



# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐՆ ԸՍՏ ՍՄԿԿ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ

Կուսակցությունն իր երկրորդ ծրագրում սահմանեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում արհմիությունների դերն ու նշանակությունը, նշեց վերջիններիս կոնկրետ խնդիրները, երկրի քայքայված տնտեսությունը վերականգնելու, արտադրաուժերը զարգացնելու, հանրային արդյունաբերություն ստեղծելու ուղիները։ Մասնավորապես ընդգծվում էր, որ հանրային արդյունաբերության կազմակերպական ապարատը, առաջին հերթին, պետք է հենվի արհեստակցական միությունների վրա։ Իրենց առջև դրված խնդիրները լուծելու համար արհմիությունները պետք է ձերբազերծվեն արտադրամասային նեղմտությունից և դառնան խոշոր արտադրական միավորումներ, ընդգրկելով արտադրության տվյալ ճյուղի աշխատավորների մեծամասնությանը, իսկ աստիճանաբար նաև բոլորին ամբողջապես (տե՛ս ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս 1-ին, էջ 534)։

Արհմիությունները, լինելով արդյունաբերության կառավարման տեղական ու կենտրոնական օրգանների ակտիվ մասնակիցներ, պետք է հասնեն այն բանին,— ասված է ՌԿ(բ)Կ VIII համագումարի որոշման մեջ,— որ ամբողջ ժողովրդական տնտեսության՝ որպես միասնական տնտեսական ամբողջության, բովանդակ կառավարումը փաստորեն կենտրոնացնեն իրենց ձեռքում (տե՛ս նույն տեղը)։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է արհմիությունների խոշոր դերը արտադրության արդյունքների նկատմամբ ժողովրդական վերահսկողություն սահմանելու գործում։ Նա գտնում էր, որ արհմիութենական կազմակերպություններն ամենալայն չափով պետք է իրենց անդամներին մասնակից անեն տնտեսության անմիջական վարմանը, դրանով իսկ նպաստելով աշխատավորական լայն խավերի վերադաստիարակմանը։ Ելնելով Վ. Ի. Լենինի այդ հայտնի ցուցումից, ՌԿ(բ)Կ VIII համագումարը սահմանեց արհմիությունների խնդիրները նոր, սոցիալիստական կարգապահություն ստեղծելու գործում, արհմիությունների վերադաս օրգաններից պահանջեց հրաժարվել հին շաբլոնից, կիրառել ու փորձել հաշվետվության, արտադրանորմաների, հատուկ ընկերական բանվորական դատարանների առաջ պատասխանատվության սահմանման նոր մեթոդներ։ Կուսակցությունն արհմիությունների առջև լուրջ խնդիրներ էր դնում ո՛չ միայն տնտեսության կառավարման, այլև արտադրության ոլորտում մասսաների պատասխանատվությունը բարձրացնելու գործում։

Անդրադառնալով պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանում

արհմիությունների խնդիրներին, Լենինը մասնավորապես նկատել է, որ «Արհմիությունները պետք է ամենամերձավոր ու անպայման գործակիցը լինեն պետիշխանության, որին նրա ամբողջ քաղաքական ու տնտեսական աշխատանքի մեջ ղեկավարում է բանվոր դասակարգի գիտակից ավանգարդ կոմկուսակցությունը» (Երկեր, հ. 33, էջ 218)։

Հայտնի է, որ այն տարիներին տրոցկիստները, «դեմոկրատական ցենտրալիզմի» խմբի լիդերներն ամեն կերպ ձգտում էին արհմիությունները հակադրել նախ՝ կուսակցությանը, ապա՝ պետությանը։ «Դեցիստները» հանդես եկան արտադրության մեջ միանձնյա ղեկավարության դեմ, նրանք պահանջում էին անսահմանափակ կոլեգիալություն, աղավաղում էին տնտեսական շինարարության մեջ դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքները։ Նրանց կարծիքով, սովետները, որպես բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպություն, բացառապես պետք է զբաղվեին քաղաքական հարցերով, իսկ արհմիությունները՝ որպես բանվոր դասակարգի տնտեսական կազմակերպություն, զուտ տնտեսական շինարարության։ ՌԿ(բ)Կ IX համագումարը դատապարտեց թե՛ «դեցիստների» և թե՛ Տոմսկու և Ռիկովի հակալենինյան հայացքները։ «Ընդունել նրանց դրույթները,— ասված է համագումարի որոշման մեջ,— նշանակում է մարքսիզմից թեքվել դեպի բուրժուական, մասնավորապես բուրժուական-տրեդյունիոնիստական նախապաշարումների կողմը» (ՍՄԿԿ բանաձևերում..., մաս 1-ին, էջ 624)։

Ելնելով լենինյան դրույթներից, ՌԿ(բ)Կ IX համագումարը հաստատեց, որ «Արհմիությունները մասսաների կոմունիստական գիտակցության և ստեղծագործական դերի զարգացման համեմատ, պետք է աստիճանաբար դառնան պրոլետարական պետության օժանդակ օրգանները և ոչ թե ընդհակառակը» (Նույն տեղը, էջ 625)։

Կոմունիստների ազդեցությունն ու ղեկավարությունն արհմիությունների նկատմամբ ուժեղացնելու համար ՌԿ(բ)Կ IX համագումարը որոշեց յուրաքանչյուր արհմիությունում ունենալ կոմունիստների կազմակերպված ֆրակցիա, որը, փաստորեն, տեղական կազմակերպությունների մի մասն էր և ենթարկվում էր կուսակցական կոմիտեներին։ Սակայն կոմֆրակցիաները չպետք է փոխարինեին արհմիություններին կամ զբաղվեին որևէ վարչարարությամբ ու մանր խնամակալությամբ։ Տեղական կուսակցական կոմիտեների և արհմիությունների ֆրակցիաների հարաբերությունները կարգավորվում էին կուսակցության կանոնադրության համապատասխան պարագրաֆներով։ Այսպիսով, սովետական արհմիությունները կազմակերպչորեն և գաղափարապես ուժեղացնելու նպատակով, համագումարն անհրաժեշտ գտավ այնտեղ աշխատանքի ուղարկել առավել նվիրված, հաստատակամ, քաղաքացիական պատերազմի դաժան դպրոցն անցած կոմունիստների։

Քաղաքացիական պատերազմից հետո խաղաղ սոցիալիստական շինարարության անցման տարիներին փոխվեցին արհմիութենական աշխատանքի ձևերը և մեթոդները։ Արհմիությունների համառուսաստանյան V կոնֆերանսը (1920 թ. նոյեմբեր) քննարկեց նախկինում կիրառված աշխատանքի ռազմական մեթոդներից հրաժարվելու և ծավալուն դեմոկրատիային անցնելու հարցը։

Կոնֆերանսի ընդունած թեզիսներում առաջադրված էին՝ արհմիությունների աշխատանքում կիրառել լայն դեմոկրատիզմ, ակտիվ մասնակցել արտադրության կազմակերպման և կառավարման կարևոր հարցերի վճռմանը, մշա-



կել տնտեսական պլաններ և արտադրածրագրեր, ծավալել արտադրական ագիտացիա, տնտեսական խնդիրներին համապատասխան հարվածայնություն, կազմակերպել աշխատանքի, կարգապահական-ընկերական դատարաններ և այլն։

Տրոցկին կոնֆերանսի ՌԿ(բ)Կ ֆրակցիայի ժողովում հանդես եկավ արհմիություններում լայն դեմոկրատիայի ծավալման և աշխատանքի համոզման լենինյան մեթոդի դեմ։ Նա առաջարկեց «թափահարել» արհմիութենական կադրերը՝ վերևից ներքև և փոխարինել նրանց լավագույն ադմինիստրատորներով։ Այստեղ դժվար չէ կռահել, որ Տրոցկին կանգնած էր արհմիություններն անհապաղ պետականացնելու վնասակար տեսակետի վրա։ ՌԿ(բ)Կ Կենտկոմն անուշադիր չէր կարող մնալ Տրոցկու նման սխալ և վնասակար առաջարկների հանդեպ, ուստի, որոշեց ստեղծել հատուկ հանձնաժողով, որին հանձնարարեց մշակել որոշման նախագիծ՝ արհմիությունների դերի և խընդիրների մասին։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը (1920 թ.) ո՛չ միայն հիմնովին մերժեց Տրոցկու թեզիսները, այլև որոշեց արհմիությունների աշխատանքում արմատավորել համոզման մեթոդը, ծավալել լայն դեմոկրատիա։ Պլենումը նպատակահարմար գտավ չհրապարակել Տրոցկու և Կենտկոմի միջև ծագած վեճը կուսակցական լայն շրջաններում։ Սակայն Տրոցկին կոպիտ կերպով խախտեց Կենտկոմի որոշումը։ Դեկտեմբերի 24-ին նա հանդես եկավ սովետների համառուսաստանյան VIII համագումարի պատգամավորների առաջ՝ «Արտադրության մեջ արհմիությունների խնդիրների մասին» զեկուցումով և շարադրեց իր հակալենինյան հայացքները։

Վ. Ի. Լենինը տեղն ու տեղը հակահարված տվեց Տրոցկուն, բնութագրելով նրա վարքագիծը որպես քաղաքականապես վտանգավոր և բյուրոկրատական։ Դեկտեմբերի 25-ին Տրոցկին հրապարակեց իր՝ Արհմիությունների դերի և խնդիրների մասին բրոշյուրը, որն ամբողջովին գրված էր հակալենինյան ոգով։ Այսպիսով, Տրոցկին, թե՛ բանավոր և թե գրավոր ելույթներով, փաստորեն, ֆրակցիոն պայքար սկսեց կուսակցության և նրա Կենտկոմի դեմ։ Չնայած ՌԿ(բ)Կ Կենտկոմը սկզբունքորեն դեմ էր դիսկուսիային, սակայն, վերջինս անխուսափելի էր և անհրաժեշտ տրոցկիստների մերկացման ու ջախջախման, կուսակցության միասնությունն ամրապնդելու համար։ Այդպես էլ եղավ. դիսկուսիան սկսվեց 1921 թվականի գարնանը։ Օպոզիցիան հանդես եկավ հակասական, խառնաշփոթ, տրոցկիստական պլատֆորմով։ Հայտնի է, որ Տրոցկին խնդիր էր դնում արհմիություններն անհապաղ ձուլել պետական օրգաններին և նրանց, որպես պետական օրգանների, հանձնել արտադրության կառավարման ֆունկցիաներ։ Այսպիսով, Տրոցկին փաստորեն պահանջում էր լուծարքի ենթարկել արհմիությունները կամ դրանք դարձնել պետական օրգանների կցորդ։ Նա ճգնում էր «ապացուցել», որ, իբր, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմամբ, արհմիությունների հիմնական ֆունկցիան՝ բանվորների նյութական և հոգևոր շահերի պաշտպանության ֆունկցիան, կորցնում է իր նախկին նշանակությունը։ Այստեղից դժվար չէ կռահել, որ Տրոցկին նպատակ ուներ թուլացնել բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, բանվորներին հակադրել պետությանը, դրանով իսկ թուլացնել պրոլետարիատի դիկտատուրայի սոցիալական բազան։ Արհմիությունների դերի և խնդիրների՝ Տրոցկու դրույթները բխում էին մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության ժխտման, նրա օպորտունիստա-

կան «տեսությունից»։ «Բանվորական օպոզիցիան» զրպարտում էր կուսակցությանը՝ անկուսակցական մասսայից «կտրվելու» և պրոլետարիատի ստեղծագործական ուժերի «թերագնահատման» հարցում, հայտարարում թե, իբր, կուսակցությունը շեղվել է լենինյան ծրագրից և վերասերվել։ Փաստորեն «բանվորական օպոզիցիան» աղավաղում էր մարքս-լենինյան ուսմունքը արհմիությունների դերի մասին, անտեսում կուսակցության ղեկավար դերի նշանակությունը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում։ «Բանվորական օպոզիցիայի» խումբը պահանջում էր ժողովրդական տնտեսության կառավարման գործը հանձնել արհմիություններին՝ «արտադրողների համառուսաստանյան համագումարին», իսկ ԺՏԳԽ-ի ապարատը՝ ՀԱՄԿԽ-ին և համապատասխան արհմիություններին։ Նրանք հանդես եկան պետությունը «արհմիութենականացնելու», այսինքն՝ պետությունն արհմիություններին ենթարկելու մերկ դատողությամբ։ Արհմիությունների հարցում կուսակցության լենինյան գծին հակադրվեց նաև «դեցիստների» խումբը, որը պահանջում էր կուսակցության ներսում ազատություն տալ բոլոր ֆրակցիաներին և խմբերին։

Այսպիսով, «դեցիստները», փաստորեն, ժխտում էին կուսակցության ղեկավար դերը երկրի տնտեսական կյանքում։ Նրանց կարծիքով, ԺՏԳԽ նախագահությունը պետք է առաջադրվեր միայն արհմիությունների կողմից։ «Դեցիստները» հանդես էին գալիս ձեռնարկություններում միանձնյա ղեկավարության և պետական կարգապահության դեմ։ Վ. Ի. Լենինը «դեցիստներ»-ին բնութագրեց որպես բոլորից բարձր ճչացողների «ֆրակցիա», իսկ նրանց պլատֆորմը էսեռա-մենշևիկյան։

ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1920 թվականի նոյեմբերյան պլենումում ձևավորվեց Բուխարինի, այսպես կոչված՝ «բուֆերային» խումբը, որը ձգտում էր տրոցկիզմը հաշտեցնել լենինիզմի հետ և պնդում էր տնտեսության կառավարման օրգաններում անպայման առաջադրել արհմիութենական թեկնածուներ։ Այսպիսով, «բուֆերային խումբը», փաստորեն փորձում էր ժխտել կուսակցության ղեկավար դերը տնտեսության ղեկավարման գործում։ «Սա,— գրել է Վ. Ի. Լենինը,— կատարյալ խզումն է կոմունիզմից և անցում սինդիկալիզմի դիրքին» (Երկեր, հ. 32, էջ 42)։

ՌԿ(բ)Կ X համագումարի որոշման նախագծում, որը հրապարակվել էր «Պրավդա» թերթի 1921 թվականի հունվարի 14-ի համարում, ցույց է տրված արհմիությունների դերի և խնդիրների լենինյան ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի ամբողջ ժամանակամիջոցում։ Նրանում արհմիությունները դիտվում են որպես կոմունիզմի դպրոց։ «Բայց այդ կազմակերպությունը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— պետական կազմակերպություն չէ, դա հարկադրանքի կազմակերպություն չէ, դա դաստիարակիչ... ներգրավման, ուսուցման կազմակերպություն է, դա դպրոց է, կառավարման դպրոց, տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց» (Նույն տեղը, էջ 2)։

Լենինյան պլատֆորմն ընդգծում է, որ կոմունիստական կուսակցությունը կոչված է ո՛չ միայն ուղղություն տալու արհմիություններին, այլև ղեկավարելու նրանց աշխատանքը։ Նշված է, որ կուսակցությունը արհմիությունների միջոցով իրագործում է կապը մասսաների հետ։ «Կապը մասսայի, այսինքն՝ բանվորների (իսկ ապա նաև բոլոր աշխատավորների) հսկայական մեծամասնության հետ,— նկատել է Իլյիչը,— արհմիությունների անխտիր ամեն



տեսակ գործունեության հաջողության ամենակարևոր, ամենահիմնական պայմանն է» (Երկեր, հ. 33, էջ 221)։

Լենինը բազմիցս անդրադարձել է կուսակցության և արհմիությունների ճիշտ փոխհարաբերության և կառուցվածքի հարցերին, առանց որոնց հնարավոր չէ հաջողության հասնել սոցիալիստական շինարարության բնագավառում։

Սոցիալիստական տնտեսության զարգացման ասպարեզում արհմիությունների հիմնական ֆունկցիաներն էին՝ մասնակցությունը պետության պլանային և տնտեսական օրգաններում, պայքարը աշխատանքի արտադրողականության աճի և կարգապահության բարձրացման համար, մասնագետների, արտադրության համար բարձրորակ կադրերի պատրաստումն ու առաջքաշումը, աշխատավորների շահերի պաշտպանումը և այլն։

* * *

Արհեստակցական միությունների դերի վերաբերյալ լենինյան ուսմունքն իր հետագա զարգացումն ստացավ կոմունիստական կուսակցության կողմից։ Այդ են վկայում կուսակցության համագումարների, կոնֆերանսների և պլենումների որոշումները։ Սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում արհմիությունները, կուսակցության ղեկավարությամբ, ծավալել են ստեղծագործական մեծ աշխատանք հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Երկրի ինդուստրացման և կոլեկտիվացման դժվարին ու բարդ խնդիրներն իրականացնելու ժամանակամիջոցում կուսակցությունն ավելի ամրապնդեց և ուժեղացրեց իր ղեկավարությունն արհմիությունների նկատմամբ, նպաստեց դրանց աշխատանքի կազմակերպման մակարդակի բարձրացմանը, ներարհմիութենական դեմոկրատիայի զարգացմանը։

ՀամԿ(բ)Կ XIV համագումարը հատկապես շեշտեց արհմիությունների խոշոր դերը սոցիալիստական արտադրության զարգացման գործում։ Այն սահմանեց արհմիությունների արտադրական խնդիրները նոր տնտեսական քաղաքականության անցկացման պայմաններում։ Նրանց առջև խնդիր դրվեց՝ սիստեմատիկ, բազմակողմանի, եռանդուն աջակցություն և օգնություն ցույց տալ կուսակցությանը և սովետական իշխանությանը՝ բանվորական պետության ապարատի բյուրոկրատական խախտումների դեմ նրանց մղած պայքարում, ինչպես և այդ ապարատը բարելավելու ուղղությամբ նրանց տարած աշխատանքում։ «Ավելի քան երբևէ մինչև այժմ,— ասված է ՀամԿ(բ)Կ XIV համագումարի բանաձևում,— մեր արհմիությունները պետք է լինեն շինարարության, նախաձեռնության, ակտիվության, բանվորների ուժերը համախմբելու, նրանց գլխովին կազմակերպելու դպրոց... մի խոսքով, կոմունիզմի իսկական դպրոց» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., մաս 2-րդ, էջ 270)։

Համագումարն ընդգծեց արտադրական խորհրդակցությունների խոշոր դերը բանվորական լայն մասսաներին սովետական-տնտեսական պրակտիկ շինարարության մեջ ներգրավելու գործում։

ՀամԿ(բ)Կ XVI համագումարի որոշումների համաձայն արհմիություններն ուժեղացրին իրենց գործունեությունը գյուղի սոցիալիստական վերափոխման համար մղված համաժողովրդական պայքարում։

Սոցիալիստական մրցության ծավալման և, առհասարակ, աշխատավոր-

ների ստեղծագործական ակտիվության բարձրացման հարցերը դտնվել են արհմիությունների ուշադրության կենտրոնում։ 1930 թվականին սովետական արհմիությունները 180 հազար բանվորական բրիգադներ ուղարկեցին գյուղերը՝ կոլտնտեսություններ կազմակերպելու և գյուղատնտեսական մեքենաները նորոգելու համար։ Կոլտնտեսային շարժումը ծավալելու գործում առանձնապես կարևոր դեր խաղացին քսանհինգհազարականները՝ այն առաջավորները, որոնք կուսակցության կոչով աշխատանքի մեկնեցին կոլտնտեսությունները։

ՀամԿ(բ)Կ XVI համագումարը սահմանեց արհմիությունների խնդիրները վերակառուցման ժամանակաշրջանում, նրանց դերը տնտեսական շինարարության մեջ։ Գլխավոր խնդիրը դառնում էր սոցիալիստական մրցության ծավալման և կազմակերպման հարցը։ Համագումարը արհմիություններին կոչ արեց բարելավել արտադրական խորհրդակցությունների աշխատանքը ձեռնարկություններում, մեծ ուշադրություն նվիրել արդյունաբերության համար որակյալ բանվորական կադրերի պատրաստմանը, օժանդակել առաջավոր բանվորների և մասնագետների առաջքաշմանը տնտեսական ապարատում, պայքար մղել բյուրոկրատիզմի դեմ։ Կուսակցության օգնությամբ և ղեկավարությամբ արհմիություններից դուրս մղվեցին աջ-կապիտուլյանտները, ամրապնդվեց ՀԱՄԿԽ-ի ղեկավարությունը։ Արհմիութենական աշխատանքներում հատկապես բեկում սկսվեց արհմիությունների ապախոշորացումից հետո (1934 թ.), որի շնորհիվ արհմիությունները կազմակերպական տեսակետից դարձան ավելի ճկուն և, ամենագլխավորը՝ կոնկրետացավ նրանց աշխատանքը։

Կուսակցությունը արհմիություններին հանձնարարեց մի շարք կարևոր պետական ֆունկցիաների իրականացման գործը։ ՀամԿ(բ)Կ XVII համագումարի որոշմամբ արհմիություններին վերապահվեց ԲԳՏ ստորին օրգանների բոլոր իրավունքները— հիմնարկ-ձեռնարկություններում բանվոր-ծառայողների սոցիալական ապահովագրման կազմակերպման, բանվորական մատակարարման բաժիններին կից փակ ճաշարանների և, առհասարակ, հասարակական սննդի օբյեկտների վրա վերահսկողության սահմանման գործը։

Սովետական արհմիությունները լարված աշխատանք ծավալեցին Հայրենական մեծ պատերազմի տարիներին։ Նրանց ջանքերն ու ողջ գործունեությունն ուղղված էին ֆաշիստական Գերմանիայի ջախջախմանը։

Արհմիություններն ակտիվ մասնակցեցին պատերազմից ծայրաստիճան քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործին։ Սովետական ժողովուրդը պատմական կարճ ժամկետում ո՛չ միայն սրագ վերականգնեց տնտեսության նախապատերազմյան մակարդակը, այլև հսկայական քայլերով առաջ մղեց իր էկոնոմիկան։

Արհմիությունների նախաձեռնությամբ ծնվեցին և լայն տարածում գտան արտադրության կառավարմանը աշխատավորների լայն խավերին մասնակից դարձնելու այնպիսի կարևոր ձևեր, ինչպիսիք էին՝ սոցիալիստական մրցությունը, հարվածային բրիգադները, արտադրական խորհրդակցությունները, պատգամավորական ժողովները, տեխնիկական կոնֆերանսները, արտադրության առաջավորների խորհրդակցությունները, կոլեկտիվ պայմանագրերի կնքումը և այլն։

Արհմիությունների կյանքում մեծ բեկում սկսվեց ՍՄԿԿ XX համագումարից հետո. համագումարը բացահայտեց արհմիությունների աշխատանքում եղած լուրջ թերությունները և ուղիներ նշեց դրանք վերացնելու համար։ Համագումարն անհրաժեշտ համարեց աշխուժացնել արհմիությունների գործունեությունը, բարձրացնել նրանց դերը երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում։

Արհմիությունների խնդիրներն արծարծվեցին և կարևոր որոշումներ ընդունվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1956 թվականի դեկտեմբերյան, ապա 1957 թվականի դեկտեմբերյան պլենումներում։ Այդ որոշումներում մասնավորապես ցույց է տրված արհմիությունների աճող դերը արտադրության մեջ, արդյունաբերության պլանավորման, ֆինանսական պլանների մշակման և կատարման, աշխատանքի կազմակերպման, աշխատավարձի նորմավորման, տեխնիկայի անվտանգության կանոնների պահպանման, աշխատավորների սոցիալական ապահովագրման գործի կարգավորման, նրանց նյութա-հոգեկան շահերի պաշտպանման և այլ բնագավառներում։

Կոմունիստական կուսակցությունը լայն հնարավորություններ է ընձեռում արհմիություններին՝ արտադրության կառավարմանը ժողովրդական լայն մասսաների մասնակցությունն ապահովելու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի 1957 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշման համաձայն, 1958 թվականից սկսած, արտադրական խորհրդակցությունները ձեռնարկություններում և կառույցներում վերածվեցին մշտական գործող խորհրդակցությունների և սկսեցին գործել արհմիությունների ղեկավարությամբ։ Արտադրական խորհրդակցությունների աշխատանքներին մասնակցում են արտադրության առաջավորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ադմինիստրացիայի, կուսակցական, կոմերիտական և գիտա-տեխնիկական ընկերության ներկայացուցիչներ։

Կոմունիստական շինարարության մեջ արհմիությունների աճող դերի մասին են վկայում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները։ Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում բարձրանում է հասարակական կազմակերպությունների, հատկապես արհեստակցական միությունների նշանակությունը։

ՍՍՀՄ արհմիությունների XV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, բարձր գնահատելով արհմիությունների խոշոր դերը կոմունիզմի կառուցման գործում, առաջադրեց նոր և մեծ խնդիրներ աշխատանքի կոմունիստական շարժման զանազան ձևերի զարգացման, աշխատավորների կոմունիստական և ինտերնացիոնալ դաստիարակության և այլ բնագավառներում։

Սովետական արհմիությունների գործունեության նպատակն է՝ օգնել կուսակցությանն իր առջև ծառացած բազմաթիվ բարդ և պատասխանատու խնդիրները լուծելու, աշխատավորությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու վեհ գործում։

Ա. Վ. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՏԵՂԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ

Կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության քա-
ղաքականությունն է՝ երկրի էկոնոմիկան խելամտորեն ի սպաս դնել ժողո-
վրդի բարեկեցության բարձրացման նպատակին: Այս գործում որոշակի դեր
է կատարում տեղական արդյունաբերությունը: Սովետական Հայաստանի էկո-
նոմիկայի այդ ճյուղն արդյունաբերական սկզբունքներով սկսել է զարգանալ
վերջին ժամանակաշրջանում՝ 1965 թվականին, երբ ստեղծվեց ՀՍՍՀ տեղա-
կան արդյունաբերության մինիստրությունը. Նրա տնօրինության ներքո ընդա-
մենը 13 ձեռնարկություն կար: Դրանք թողարկում էին մետաղյա և փական-
քային իրեր, հախճապակյա ու պլաստմասսայի արտադրատեսակներ, գործ-
վածքեղեն, էմալապատ ու ցինկապատ ամաններ և այլ առարկաներ: Այդ
ձեռնարկությունների տարեկան համախառն արտադրանքն ընդամենը 14,6
միլիոն ռուբլի էր:

Ութերորդ հնգամյակում լայն թափով զարգացավ մեր հանրապետության
տեղական արդյունաբերությունը: Մինիստրության ենթակա արդյունաբերա-
կան ձեռնարկությունների թիվը հասավ 45-ի, որոնք վերակառուցվեցին և ըն-
դարձակվեցին, արտադրամասերում տեղակայվեցին նոր սարքավորումներ ու
մեքենաներ: Հնգամյակի ընթացքում թողարկվեցին լայն սպառման առար-
կաների նոր տեսակներ, որոնք թե՛ որակով, թե՛ ճաշակով գնորդի ուշադրու-
թյունն էին գրավում: 1970 թվականին հանրապետության տեղական արդյու-
նաբերության մինիստրության ձեռնարկությունները թողարկեցին 274 ասոր-
տիմենտի ապրանքներ, 59 միլիոն ռուբլու արժողությամբ:

Կապիտալ շինարարական աշխատանքների ծավալման, ձեռնարկություն-
ների վերակառուցման և ձեռնարկված կազմ-տեխնիկական միջոցների կի-
րառման շնորհիվ հնարավոր եղավ շահագործման հանձնել մոտ երկու հազար
տեխնոլոգիական և բարձր արտադրողական այլ սարքավորումներ, ավտոմատ
և հոսքային գծեր: Լուրջ փոփոխություններ կատարվեցին կադրերի կազմում:
Ավելացավ ինժեներա-տեխնիկական անձնակազմը, որն աշխատողների ընդ-
հանուր թվի համեմատությամբ, 1965 թվականի 12-ից 1970 թվականին հա-
սավ 16 տոկոսի: Ներկայումս մինիստրության ձեռնարկություններում կան
մոտ հազարից ավելի ինժեներա-տեխնիկական աշխատողներ, որոնց կեսից
ավելին ունեն միջնակարգ և բարձրագույն տեխնիկական կրթություն: Ստեղծ-



ված նախադրյալները հնարավորություն տվին արագացնելու տեխնիկական
առաջընթացը, ընդլայնելու արտադրանքի տեսակները և բարձրացնելու դրանց
որակը: Վերջին չորս տարում մինիստրության արդյունաբերական ձեռնարկու-
թյուններում յուրացվել և այժմ մասսայաբար թողարկվում են կուլտ-կենցա-
ղային՝ տնային տնտեսական գործածության մոտ 1000 առարկաներ:

ՍՄԿԿ XXIV համագումարն ընդգծեց, որ բնակչությանը լայն սպառման
առարկաներով ապահովելու գործում մեծ դեր ունի կատարելու տեղական
արդյունաբերությունը: Արդյունաբերության այդ ճյուղի առջև խնդիր է դըր-
ված «...էապես ընդլայնել գեղարվեստական արհեստների բարձրորակ առար-
կաների, հուշանվերների, կենցաղում անհրաժեշտ տնտեսական մանր առար-
կաների և ժողովրդական սպառման մյուս ապրանքների արտադրությունը,
այդ նպատակով առավելապես օգտագործելով հումքի և նյութերի տեղական
ռեսուրսները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 344):

Հաշվի առնելով մեր հանրապետության առկա հնարավորությունները,
ՀՍՍՀ նոր հնգամյա պլանով նախատեսված է տեղական արդյունաբերության
արտադրանքի ընդհանուր ծավալն ավելացնել 2,8 անգամ (միութենականը
1,7 անգամ), 1975 թվականին թողարկել 164 միլիոն ռուբլու համախառն ար-
տադրանք: Հանրապետության տեղական արդյունաբերությունը, մեկ շնչի
հաշվով, 1965 թվականին թողարկել է 6,3, 1970 թ. 24, իսկ 1975 թ. կթողար-
կի 59 ռուբլու արտադրանք:

Համախառն արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ հուշանվերների ար-
տադրանքը 1975 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, կաճի 4,1
անգամ, գեղարվեստական արհեստագործության իրերինը՝ 4, էմալապատ,
ցինկապատ ամանեղենինը՝ 5,9, տոնածառի խաղալիքներինը և զարդարանք-
ներինը՝ 4,5, տեքստիլ-գալանտերեայինը՝ 2,7, տրիկոտաժինը՝ 3, կար-
վածքինը՝ 1,5, կահույքինը՝ 1,8, գորգեր և գորգային իրերինը՝ 1,8 անգամ: Կա-
վելանա նաև բամբակյա գործվածքի, բրդյա թելի արտադրանքը: Նոր թափ
կստանա տեղական շինանյութերի և փայտամշակման արտադրությունը՝ շըր-
ջանային արդյունաբերական կոմբինատներում:

Նախատեսվում է զգալի չափով ավելացնել դանակների, պատառաքաղ-
ների, չժանգոտվող մետաղից պատրաստվող ճաշի գդալների, մետաղյա և
ալյումինից շտամպվող ամանեղենի, ոսկերչական (ոսկուց ու արծաթից պատ-
րաստած) իրերի արտադրանքը: Հաշվի առնելով, որ բնակչության պահանջը
մեծ է մելխիորե ամանեղենի, հատկապես, թեյնիկների, մանկական հեծա-
նիվների, սեղանի էլեկտրական լամպերի, ազգային երաժշտական գործիքների
նկատմամբ, շատ բան կարվի դրանց արտադրության ավելացման համար:

Մեր հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրությունն
ընթացիկ հնգամյակում կթողարկի մեծ պահանջարկ ունեցող մի շարք լայն
սպառման առարկաներ: Կարտադրվեն էլեկտրակենցաղային սարքեր, տեղա-
կան կիսաթանկարժեք քարերից պատրաստված և գեղարվեստական կերամի-
կական իրեր, հատակի խավավոր գորգեր: Միայն վերջինից կթողարկվի 1,5
միլիոն քմ:

Գործնական քայլեր են կատարվել՝ ստեղծելու և ծավալելու արհեստական
կարակուլի, արհեստական կաշվի, ժանյակի, չժանգոտվող մետաղից տապա-
կների, բաղնիքի խալաթների, ոսկյա նորաձև շղթաների, բրդյա գլխաշորերի
արտադրությունը, որոնք շուկայական մեծ պահանջարկ ունեն:

Արդյունաբերական արտադրանքի ծրագրի հաջող կատարման, հատկապես մասսայական սպառման առարկաների արտադրության կազմակերպման համար նոր հնգամյակում նախատեսվում է տեխնիկապես վերակառուցել, ընդլայնել և կառուցել արդյունաբերական մի շարք նոր ձեռնարկություններ։ Զգալի գործ կկատարվի ձեռնարկությունների մասնագիտացման և կենտրոնացման նպատակով։ Դրա համար նախատեսված է 38,6 միլիոն ռուբլու կապիտալ ներդրում։ Կվերակառուցվեն և նոր տեխնիկայով կհագեցվեն Երևանի ու Կալինինոյի ամանեղենի ձեռնարկությունները։ Միայն Կալինինոյի գործարանն այս տարի կթողարկի 100 հազար էմալապատ թեյնիկ, իսկ հետագայում այն կկրկնապատկվի։ Մեծ փոփոխություններ կկատարվեն Լենինականի մանկական հեծանիվների գործարանում, որը տարեկան կարտադրի 250 հազար հեծանիվ։ Այս տարի կսկսվի նոր գործարանի կառուցումը։ Արտաշատում կընդարձակվեն բրուտագործությունը և կերամիկական իրերի արտադրությունը. այն հետագայում կվերածվի ճենապակու։ 1973 թ. կավարտվի նոր գործարանի կառուցումը։ Կընդլայնվեն, տեխնիկապես կհագեցվեն Գորիսի, Էջմիածնի, Սիսիանի ու Կամոյի արդյունաբերական կոմբինատները, նոր ձեռնարկություններ կկառուցվեն Ստեփանավանում, Ղուկասյանում և մյուս շրջաններում։ Լուսակերտում կառուցվում է ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրությանը ենթակա գործիքաշինական գործարան, որի արտադրած գործիքներով ու սարքերով կհագեցվեն մեր հանրապետության տեղական արդյունաբերության ձեռնարկությունները։

Մինիստրության օգուտների, ձեռնարկությունների սոց-կուլտ միջոցառումների ֆոնդերի հաշվին կծավալվի բնակարանային, կուլտ-կենցաղային օբյեկտների շինարարությունը։ Այդ նպատակի համար ընթացիկ հնգամյակում կծախսվի մոտ 10 միլիոն ռուբլի։

Մինիստրության մշակած և հաստատած հնգամյա պլանի համաձայն բնակելի շենքեր կկառուցվեն Լենինականում, Էջմիածնում, Սիսիանում։ Երևանում բնակելի շենքեր կկառուցվեն գործվածքային «Մասիս» ֆաբրիկայի, Մետշին, հուշանվերների, հախճապակու գործարանների, «Հայբնագույնքարեր» կոմբինատի, գլխարկների ֆաբրիկայի կոլեկտիվների համար։ «Մասիս» ֆաբրիկան կունենա իր մանկապարտեզը։ Կավարտվի 400 տեղանոց պիոներական ճամբարի շինարարությունը Սևանում, Երևանում կկառուցվի գեղարվեստական տեխնիկական ուսումնարան՝ բոլոր հարմարություններով։ 1972 թ. շահագործման կհանձնվի «Հայէլեկտրակենցաղսարք» միավորման հանգստի բազան Աղավնաձորում։ Մի շարք ձեռնարկությունների աշխատողների համար կկառուցվեն հասարակական սննդի և այլ օբյեկտներ։

Նոր հնգամյակում կապիտալ շինարարության ծրագրի կենսագործման շնորհիվ արտադրությանը կհատկացվեն 39,5 միլիոն ռուբլու հիմնական արտադրաֆոնդեր՝ անցյալ հնգամյակի 14,9 միլիոնի դիմաց։ Մեծ ուշադրություն կնվիրվի ձեռնարկություններում աշխատանքի նորմալ պայմանների ստեղծմանը։ Կառուցվող և վերակառուցվող ձեռնարկություններում կստեղծվեն լողարաններ, հանդերձարաններ, կանանց հիգիենայի սենյակներ, ճաշարան-բուֆետներ, սանիտարական կետեր, բարեկարգ և կանաչապատված տերիտորիաներ, ջրավազաններ։ Հատուկ ուշադրություն կնվիրվի աշխատանքի պայմանների բարելավմանը։

1975 թ. հիմնական ֆոնդերի շահագործմամբ հնարավոր կլինի նոր ար-



տադրական կարողություններից ստանալ 62 միլիոն ռուբլու լայն սպառման
առարկաներ։ Միայն աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ
կթողարկվի 38 միլիոն ռուբլու արտադրանք։ Աշխատանքի արտադրողականու-
թյան տարեկան աճը կկազմի 12 տոկոս։ Օգուտները 1975 թ., 1970 թ. համե-
մատությամբ, կաճեն 3,2 անգամ։ Աշխատանքի մեքենայացման մակարդակը
կավելանա ավելի քան 40 տոկոսով։
Նախատեսված արտադրական ծրագրի կենսագործման, արտադրության
արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման համար անհրա-
ժեշտ է արմատապես բարելավել արտադրության կառավարումը, ձեռնարկու-
թյուններում աշխատանքի կազմակերպումը, նորագույն տեխնիկայի գործա-
դրումը։ Դրանց կենսագործումը շատ բանով պայմանավորված է ղեկավար,
ինժեներա-տեխնիկական կադրերի կազմակերպական և տեխնիկական մա-
կարդակով, նրանց հմտությամբ։
Հաշվի առնելով վերոհիշյալը և կյանքի հրամայական պահանջները,
մինիստրությունը լրջորեն զբաղվում է ձեռնարկությունների ղեկավար, ինժե-
ներա-տեխնիկական կադրերի տնտեսական և տեխնիկական գիտելիքների մա-
կարդակի բարձրացման հարցերով։ Դիրեկտորների, գլխավոր ինժեներների,
ծառայության պետերի համար կազմակերպված մշտական գործող սեմինարի
երկու տարվա փորձը ցույց է տալիս, որ կադրերը հարստացնում են իրենց գի-
տելիքները, սովորում են խելացի կառավարել արտադրությունը։
Տեղական արդյունաբերության բազմաճյուղ արտադրության բնույթը ո՛չ
միայն մինիստրության ապարատի աշխատողներից, այլև արտադրության ղե-
կավարներից պահանջում է, որպեսզի նրանք լինեն ձեռներեց և գործիմաց։
Միայն այդպիսի ղեկավարները կարող են կատարել իրենց առաջադրված խըն-
դիրները, բարձրացնել արդյունաբերության արդյունավետությունը, շուկային
տալ ամենօրյա օգտագործման բարձրորակ ապրանքներ։
Չնայած ձեռք բերված հաջողություններին, տեղական արդյունաբերու-
թյան արտադրանքի ծավալը և տեսակաշարը չեն բավարարում բնակչության
հարաճուն պահանջները, ձեռնարկություններում դանդաղ են իրագործվում ար-
տադրության արդյունավետության բարձրացման և կենսական կարևորություն
ունեցող լայն սպառման առարկաների արտադրանքի առաջադրանքները։
ՍՄԿԿ XXIV համագումարը կուսակցական կազմակերպությունների և
արդյունաբերության ղեկավարների առջև խնդիր դրեց՝ բարձրացնել արտա-
դրության արդյունավետությունը, այսինքն՝ հասնել այն բանին, որ
«...աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքան-
չյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային եկամտի
ծավալը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 73)։
Մեր հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության
մի շարք ձեռնարկություններ արդեն ձեռնամուխ են եղել համագումարի առա-
ջադրած այդ կարևոր խնդրի լուծմանը։ Այդ ձեռնարկությունների կոլեկտիվ-
ներում մեքենաներն ու սարքերը լրիվ գործածելու, հերթափոխության գործա-
կիցը բարձրացնելու, պարապուրդներն ու կադրերի հոսունությունը նվազեց-
նելու, հումքն ու վառելիքը խնայողաբար օգտագործելու շնորհիվ հաջողու-
թյամբ են կատարվել 1971 թվականի առաջադրանքները։
«Պլաստիկ» գործարանում (դիրեկտոր՝ Ս. Գրիգորյան, կուսկազմակերպու-
թյան քարտուղար՝ Վ. Սոֆյան), յուրացվել են վակուում-կաղապարային և

շրջման, դեկորատիվ շերտավոր ապակե-պլաստիկ առարկաներ ստանալու տեխնոլոգիական նոր պրոցեսներ։ Լրացուցիչ երկու թաղանթային ագրեգատների տեղադրումը հնարավորություն ընձեռեց պոլիէթիլենային թաղանթի արտադրությունը տարեկան 500-ից հասցնել 1300 տոննայի, իսկ այս տարի՝ մինչև 1600 տոննայի։ Նախատեսվում է 1972 թ. կազմակերպել մինչև մեկ լիտր տարողություն ունեցող փչածո (դույլ, տակառիկ, ջրաման, բաժակ) իրերի արտադրությունը, որի յուրացումը հնարավորություն կընձեռի տեղամասի արտադրությունը տարեկան ավելացնելու 25 տոննայով և հասցնելու մինչև 280 տոննայի։

Արտադրական հրապարակների ռացիոնալ օգտագործման, նոր, բարձր կարողություն ունեցող մեքենաների տեղադրման շնորհիվ ձեռնարկությունը հնարավորություն կունենա տարեկան արտադրելու 2850 տոննա թաղանթային, ձուլածո, փչածո արտադրատեսակներ։ Գործարանում լուրջ աշխատանք է տարվում սարքավորումների մոդեռնացման, օժանդակ աշխատանքների ավտոմատացման և մեքենայացման նպատակով։ Մեքենայացվել են մինչև 2 տոննա քաշ ունեցող բեռների բարձման և բեռնաթափման աշխատանքները, ձեռքի աշխատանքի մի քանի պրոցեսներ, որոնց տնտեսական արդյունքը անցյալ տարի կազմել է 15 հազար ռուբլի։ Այստեղ կազմակերպված է երկրորդական հումքից ստացվող առարկաների արտադրությունը, որը լրացուցիչ եկամուտ է բերում ձեռնարկությանը։

Գործարանի տնտեսական ցուցանիշների բարձրացման շնորհիվ ստեղծվել են նյութական խրախուսման ֆոնդեր։ Միայն անցյալ տարի նյութական խրախուսման պարգևատրության տարբեր ֆոնդերից գործարանի աշխատողներին տրվել է 137 հազար ռուբլի։ Կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ պարգևատրվել է 3 աշխատավարձի չափով։ Ձեռնարկությունն զգալիորեն բարձրացրել է աշխատանքային կարգապահությունը, նվազել է կադրերի հոսունությունը։

Գործարանը սոցմրցության մեջ առաջավոր տեղ է գրավել և հաճախ արժանացել Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի, Հայկական ՍՍՀ տեղական արդյունաբերության և ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ դրոշին և առաջին կարգի մրցանակի։

Ձեռնարկության արտադրության արդյունավետության բարձրացման գործում մեծ ներդրում ունեն ռացիոնալիզատորներն ու գյուտարարները։ Անցած տարի ընդունվել է մոտ 50 առաջարկություն՝ 26 հազար ռուբլու պայմանական օգուտով։

Վերը նշված միջոցառումները բարերար ազդեցություն թողեցին աշխատանքի արտադրողականության աճի վրա։ Եթե 1966 թ. մի բանվորի տարեկան միջին արտադրողականությունն ընդունենք 100, 1971-ին այն կազմել է 265 տոկոս։

Տեխնիկական առաջընթացի ապահովման նպատակով 1972 թ արտադրության մեջ կներդրվեն ձուլածո իրերի ներկման, գեղարվեստական իրերի պատրաստման, կապրոնի չորացման պրոցեսի կատարելագործման, պոլիէթիլենային թաղանթը երկգույն ներկելու և 19 այլ աշխատանքների տեխնոլոգիական մշակումը։

Մինիստրության ձեռնարկությունները պայքարում են ՍՄԿԿ Կենտկոմի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի 1970 թ. մարտին՝ խնայողության ռեժիմի



կիրառման վերաբերյալ հրապարակված նամակի պահանջների կենսագործման համար։ Երևանի գլխարկների ֆաբրիկայի (որը միաժամանակ մանկական հագուստ է պատրաստում) կոլեկտիվը, կիրառելով խնայողության ռեժիմը, որոշ հաջողությունների է հասել. 1970 թ. ֆաբրիկան տնտեսել է 31,1 հազար ռուբլու հումք և օժանդակ նյութեր։ Միայն խնայված հումքի հաշվին տրվել է 52 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։ Ֆաբրիկան տարվա ընթացքում 3 և կես օր աշխատել է խնայված հումքի հաշվին, որից ստացել է 17 հազար ռուբլու լրացուցիչ օգուտ։

Երևանի գլխարկների ֆաբրիկայի կոլեկտիվը (դիրեկտոր՝ Կ. Զաքարյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Զ. Երեմյան) սոցիալիստական լայն մրցություն ծավալելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների իրականացման նպատակով, առանձնած պարտավորություններում հատուկ ուշադրություն նվիրեց հումքի և նյութերի խնայողությանը։ Արդյունքը եղավ այն, որ 1970 թվականին խնայվեց 34 հազար ռուբլու հումք և օժանդակ նյութեր, ֆաբրիկան 4 օր աշխատեց խնայված նյութերի հաշվին և 19 հազար ռուբլու արտապլանային օգուտ տվեց։ Շարունակելով խնայողության ռեժիմը, ֆաբրիկան անցյալ տարի տնտեսեց 44,5 հազար ռուբլի։

Գծագրող վարպետների լավ աշխատանքի շնորհիվ օգտագործվում են միջլեկալային թափոնները։ Օրինակ՝ նախապատրաստական արտադրամասի նախկին վարիչ, այժմ գծագրող Գ. Պողոսյանի առաջարկով 1970 թ. միջլեկալային թափոնների նվազեցման հաշվին (միայն կոստյումի համար ծախսված գործվածքեղենից) տնտեսվեց 13 հազար ռուբլու հումք։ Դրա հաշվին ֆաբրիկան թողարկեց մոտ 17 հազար ռուբլու նախադպրոցական հասակի երեխաների անդրավարտիքներ։ Այստեղ խնայվում և օգտագործվում են սալոմի, մորթու թափոնները. երկրորդական հումքի տեսակավորման շնորհիվ բարձրանում է ձեռնարկության շահույթը։ 1970—1971 թթ. դրանից ստացվել է մոտ 17 հազար ռուբլու խնայողություն։

Ընթացիկ հնգամյակի առաջին տարում արտադրության արդյունավետությունը բարձրացնելու գործում զգալի հաջողություններ են ձեռք բերել «Մասիս» գործվածքային ֆաբրիկան (դիրեկտոր՝ Ս. Մարգարյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ա. Սարգսյան), «Տնայնագործ» կոմբինատը (դիրեկտոր՝ Վ. Ալեքսանյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Շ. Հակոբյան), Լենինականի մանկական հեծանիվների գործարանը (նախկին դիրեկտոր՝ Ե. Մեշուրիս, կուսկազմակերպության քարտուղար՝ Ռ .Խաչատրյան), Կալինինոյի էմալապատ ամանեղենի գործարանը (դիրեկտոր՝ Գ. Սարգսյան, կուսկազմակերպության քարտուղար՝ Ա. Պողոսյան) և այլ ձեռնարկություններ։

ՀՍՍՀ տեղական արդյունաբերության մինիստրության արդյունաբերական ձեռնարկություններն ընդհանուր առմամբ անցյալ տարի արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարեցին 100,1, իրացմանը՝ 101,6 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ, համախառն արտադրանքի պլանը աճել է 27,3, իրացմանը՝ 35 տոկոսով։ Կատարվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, որից ստացված պայմանական տնտեսումը 928 հազար ռուբլի է։ 1971 թ. յուրացվել և արտադրվել են 323 անուն կուլտկենցաղային և տնային գործածության առարկաներ (միայն Երևան քաղաքի ձեռնարկությունները՝ 185 անուն)։ Որոշակի գործ է կատար-

վել գործարաններն ու ֆաբրիկաները նորագույն սարքերով հագեցնելու նպատակով։ Ներդրվել են 64 նոր սարքեր ու մեխանիզմներ։

Սակայն, պետք է նշել, որ մեր հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության ենթակա ոչ բոլոր ձեռնարկություններն են, որ լիովին օգտագործում են իրենց հնարավորությունները և մտահոգվում արտադրության բարձրացման հարցերով։ Այսպես, անցյալ տարի Շամշադինի մանկական խաղալիքների գործարանն իր առաջադրանքները կատարեց միայն 58,3 տոկոսով։ Լենինականի մետաղյա իրերի գործարանը թերակատարեց մահճակալների և չժանգոտվող պողպատից պատրաստվող գդալների ու խոհանոցային պարագաների արտադրության պլանը։ «Հայբնագույնքար» կոմբինատը տարեկան պլանը կատարեց ընդամենը 68,1 տոկոսով։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ այդ ձեռնարկությունների ղեկավարները չկարողացան ինչպես հարկն է կազմակերպել աշխատանքն ու լրիվ օգտագործել արտադրական կարողությունները։ Բայց պետք է նշել, որ անբավարար է եղել նաև նյութա-տեխնիկական մատակարարումը։

Չհանգստանալով ձեռք բերած հաջողություններով, մեր հանրապետության տեղական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների կուսակցական, կոմերիտական կազմակերպությունները, արհեստակցական միությունները սոցիալիստական մրցություն են ծավալել ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը դիմավորելու իններորդ հնգամյակի երկրորդ տարվա առաջադրանքները գերակատարած։

Վ. Թ. ՍՄԲԱՏՅԱՆ
ՀՍՍՀ տեղական արդյունաբերության
մինիստրի տեղակալ



# ԱՄԵՆԻՑ ԱՌԱՋ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ

Կոմունիզմի կառուցման ծրագրի կենսագործումը մեծապես կախված է աշխատանքի կազմակերպվածությունից ու կարգապահությունից։

Կոմունիստական շինարարության արդի էտապում, երբ բուռն թափով զարգանում են գիտությունն ու տեխնիկան, արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, աճում են ժողովրդական տնտեսության մասշտաբները, աշխատանքային կարգապահության բարձրացումը դառնում է մեր առաջընթացի, նոր հնգամյա պլանի հաջող կատարման ու ժողովրդի բարեկեցության արագ աճի կարևոր պայմանը։

Նախ՝ նշենք, որ աշխատանքային կարգապահությունն արտահայտվում է բազմապիսի ձևերով ու պայմանավորված է մարդկանց սոցիալ-տնտեսական վիճակով, արտադրության եղանակով։ Հասարակական աշխատանքն անհնար է առանց մարդկանց վարքի որոշ կանոնների ու նորմերի պահպանման։ Ուստի, աշխատանքային կարգապահությունը հասարակական աշխատանքի կազմակերպման կարգ է, համատեղ աշխատանքի անհրաժեշտ պայման։ Այս առումով էլ աշխատանքային կարգապահությունը բնորոշ է արտադրության բոլոր եղանակներին։ Սակայն արտադրության յուրաքանչյուր եղանակ ունի իրեն հատուկ կարգապահությունը, որը որոշվում է արտադրության միջոցների նկատմամբ ունեցած սեփականության ձևով։ Հակամարտ հասարակության պայմաններում աշխատանքային կարգապահությունը բխում է տիրապետող դասակարգերի շահերից և իրականացվում է հարկադրանքի տարբեր միջոցներով։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակով շահագործողների համար դարեր շարունակ կատարվող հարկադրական աշխատանքը փոխարինվեց հասարակության համար ազատ ու ստեղծագործական աշխատանքով։ Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի արտահայտությունը եղավ այն, որ պատմական կարճ ժամանակամիջոցում, սովետական ժողովրդի սխրագործ աշխատանքով իրականացվեց սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։

Աշխատանքային կարգապահության ամրապնդումը պայմանավորված է աշխատանքի սոցիալիստական կազմակերպման սկզբունքներով, արտադրության պրոցեսում աշխատողների փոխադարձ, ընկերական հարաբերություններով, նյութական բարիքների բաշխման և, ամենից առաջ, աշխատանքի արդյունքի մեջ արտադրողի անմիջական շահագրգռվածության բարձրացման սկզբունքով։ Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի դաստիարակումը,

-աշխատանքային կարգապահությունն ու կազմակերպվածությունն արտա-
հայտվում են սովետական մարդկանց հերոսական աշխատանքներով, սոցիա-
լիստական մրցության ծավալմամբ, արտադրության առաջավորների ու նորա-
րարների թվի ավելացմամբ, արտադրության արդյունավետության և աշ-
խատանքի արտադրողականության բարձրացմամբ, պլանային առաջադրանք-
ների կատարմամբ ու գերակատարմամբ։

Աշխատանքը սոցիալիստական հասարակարգում գնահատվում է ըստ ար-
ժանվույն, կիրառելով խրախուսման բազմապիսի ձևեր ու մեթոդներ՝
նյութական պարգևատրումներից մինչև կառավարական ամենաբարձր կոչում
շնորհելը։

Կոմունիստական շինարարության ընթացքում, երկրի բարգավաճման,
ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերած նվաճումների
համար տասնյակ միլիոնավոր մարդիկ արժանացել են հասարակության հար-
գանքին, պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով, իսկ նրանց մի
մասին շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում։ Անցած
հնգամյակի առաջադրանքները բարձր ցուցանիշներով կատարելու համար
հանրապետության 13 ձեռնարկություն և կազմակերպություն պարգևատրվե-
ցին ՍՍՀՄ շքանշաններով, իսկ ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղե-
րում զբաղված ավելի քան 6600 աշխատողներ արժանացան կառավարական
պարգևների։

Աշխատավոր ժողովրդի հերոսական աշխատանքի շնորհիվ մեր հանրա-
պետությունն անցած հնգամյակում արժանացավ Լենինի երկրորդ և Հոկտեմ-
բերյան հեղափոխության շքանշանների։

Աշխատանքի հերոսները, արտադրության առաջավորները շրջապատված
են հոգատար, բարյացակամ մարդկանցով, վայելում են նրանց սերն ու
հարգանքը։ Նրանց անունները հայտնի են ոչ միայն իրենց կոլեկտիվներում,
այլև նրա սահմաններից դուրս։ Արժանի է հիշատակել մեր հանրապետության
Հայէլեկտրամեքենաշինական գործարանի փականագործ Ալբերտ Գասպարյա-
նի, Կիրովականի քիմկոմբինատի կարբիդագործների բրիգադավար Անուշավան
Թամրազյանի, Լենինականի տեքստիլկոմբինատի ջուլհակուհի Թամարա Սար-
գըսյանի, «Պոլիվինիլացետատ» գործարանի փականագործների բրիգադավար
Ռաֆիկ Քոլոզյանի, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի էքսկավատո-
րավար Արծրուն Առաքելյանի, Աբովյանի գործարանի բանվոր Բաբկեն Սա-
րուխանյանի, Սևանի ապակեմեկուսիչների գործարանի բանվորուհի Նադեժդա
Ներավայի, Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ավագ ձուլող Հմայակ
Աբեղյանի և շատ ուրիշների անունները, որոնք հիշատակված են ՀԿԿ XXV
համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ։

Արտադրության առաջավորների փառապանծ բանակն իր ստեղծագործ,
հերոսական աշխատանքով կազմակերպվածության օրինակ է ծառայում, նոր
թափ հաղորդում սոցմրցության ծավալմանը, կոմունիստական աշխատանքի
շարժմանը, նոր հարաբերությունների ձևավորմանը և դրանով իսկ արագաց-
նում մեր առաջընթացը։

Բավական է ասել, որ այժմ ՍՍՀՄ-ում ավելի քան 74 միլիոն բանվոր-
ծառայողներ մասնակցում են սոցիալիստական մրցությանը, իսկ կոմունիս-
տական աշխատանքի համար պայքարողների թիվն անցնում է 41 միլիոնից։
Մեր հանրապետությունում սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են



600 հազար աշխատողներ, ընդ որում 200 հազար մարդ պայքարում է կոմու-
նիստական աշխատանքի պատվավոր կոչման համար. դրանցից նյութական
արտադրության ոլորտում ավելի քան 51 հազար մարդ արդեն արժանացել է
այդ բարձր կոչմանը։

Սոցիալիստական մրցության կազմակերպման լավագույն օրինակ են
ծառայում Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի
գործարանների, Ս. Մ. Կիրովի անվան քիմիական, Քաջարանի պղնձամոլիբ-
դենային, Լենինականի տեքստիլ կոմբինատների և շատ ուրիշ արդյունաբերա-
կան ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Հայէլեկտրամեքենաշինական գոր-
ծարանում սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են ավելի քան 10
հազար մարդ։ Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատում մոտ 2400
բանվորներ արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայինի,
իսկ 179 բրիգադներ ու հերթափոխություններ՝ կոմունիստական աշխատանքի
բարձր կոչման։ Այստեղ արժանի է հիշատակել ապարատավարների բրիգա-
դավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Ս. Մ. Պետրոսյանի նախա-
ձեռնությունը. նա առաջարկել է անհատական ու բրիգադային մրցություն ծա-
վալել աշխատաժամանակի անձնական ռեզերվների հայտնաբերման և ռա-
ցիոնալ օգտագործման հաշվին աշխատանքի արտադրողականությունը բարձ-
րացնելու համար։ Ինչպես անհատ աշխատողներ, այնպես էլ արտադրական
կոլեկտիվներ հանդես են գալիս բազմապիսի նախաձեռնություններով, որոնք
նպաստում են աշխատանքային կարգապահության բարձրացմանը, պլանային
առաջադրանքների կատարմանը, արտադրության արդյունավետության բարձ-
րացմանը, տեխնիկական առաջադիմության արագացմանը և, վերջապես, ժո-
ղովրդի կենսամակարդակի բարձրացմանը։ Աշխատանքի նկատմամբ նոր
վերաբերմունքի ձևավորումը դարձել է մասսայական և ընդգրկում է հասարա-
կական կյանքի բոլոր բնագավառները։ Այդ կարևոր գործին լուրջ ուշադրու-
թյուն են նվիրում մեր կուսակցությունն ու կառավարությունը։ «Կուսակցու-
թյունը իր խնդիրն է համարել պաշտպանել աշխատանքի նկատմամբ կոմու-
նիստական վերաբերմունքի մասսայական շարժումը, համակողմանի խրա-
խուսել սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը»
(Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ համագումարին,
«Հայաստան» հրատարակչություն, Ե., 1971, էջ 131)։

Արտադրության աշխատողների զգալի մասը սովորաբար գործում է կո-
մունիստական աշխատանքի կարգապահության առավել ամրապնդման ծրգ-
րով։ Նրանք աշխատանքային կարգապահությունը հասկանում են ոչ միայն
աշխատանքից չուշանալը, արտադրության ու աշխատանքի կարգապահական
խախտումներ թույլ չտալը, այլև իր ուժերի լրիվ նվիրաբերումը մեր ընդ-
հանուր գործին։ Ահա թե ՍՄԿԿ XXIV համագումարում ինչ է ասել Մոսկ-
վայի առանցքակալի պետական առաջին գործարանի փականագործների բրի-
գադավար Ա. Վ. Վիկտորովը. «Մեզ՝ կադրային բանվորներիս համար կար-
գապահություն նշանակում է ոչ թե պարզապես ժամանակին ներկայանալ
աշխատանքի, պահպանել աշխատանքային կանոնադրությունը, և ոչ էլ նույ-
նիսկ արտադրական նորմաները սիստեմատիկ կատարել։

Աշխատանքի սոցիալիստական կարգապահությունը նշանակում է ուժերի
լիակատար նվիրաբերում իր գործին, ակտիվություն և նախաձեռնություն աշ-

խատանքում, սրտացավ տնտեսատիրոջ վերաբերմունք արտադրության նկատմամբ»։

Սովետական ժողովրդի նվիրական աշխատանքն արագացնում է ընդհանուր նպատակի կենսագործումը։ Դրա վառ արտահայտությունն են անցած հնգամյակի հիմնական ցուցանիշների կատարումն ու գերակատարումը։ Այսպես, երկրի ազգային եկամտի աճը կազմեց 41 տոկոս, արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացավ 1,5 անգամ, գյուղատնտեսական արտադրանքինը՝ 21 տոկոսով, նախորդ հնգամյակի 12 տոկոսի դիմաց. աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 37 տոկոսով, անցած հնգամյակի 29 տոկոսի դիմաց։

Այս ամենը հնարավորություն տվեց զգալիորեն բարձրացնելու ժողովրդի կենսամակարդակը։ Նախորդ հնգամյակում բնակչության մեկ շնչին ընկնող եկամուտներն ավելացան 33 տոկոսով, ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներով նախատեսված 30 տոկոսի փոխարեն։

Հաջողությունները նշանակալից են նաև մեր հանրապետությունում։ Արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելացավ 1,8 անգամ, աշխատանքի արտադրողականությունը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, աճեց 31 տոկոսով, նախորդ հնգամյակի 15,4 տոկոսի դիմաց։ Զգալիորեն աճել են արտադրության մեջ զբաղվածների ստեղծագործական աշխատանքի ծավալն ու որակը։ Տեխնիկական առաջադիմության արագացման բնագավառում վիթխարի աշխատանք է կատարել գիտա-տեխնիկական հասարակայնությունը՝ ռացիոնալիզատորներն ու գյուտարարները, որոնք անցած հնգամյակի տարիներին ժողովրդական տնտեսության մեջ ներդրել են ավելի քան 72,8 հազար նորարարական առաջարկներ, որոնցից տնտեսված գումարը կազմել է ավելի քան 104,4 միլիոն ռուբլի։ Հանրապետությունում գործում են 1648 արտադրական խորհրդակցություններ, որոնցում ընդգրկված են ավելի քան 63 հազար բանվոր և ինժեներատեխնիկական աշխատողներ, որոնք միայն 1970 թ. քննարկել և ընդունել են 21 հազար առաջարկ, որից 17 հազարը ներդրվել է արտադրության մեջ։

Հաջողություններն ավելի նշանակալից կլինեին, եթե բոլոր աշխատողները, ձեռնարկություններն ու կոլեկտիվները բարեխղճորեն կատարեին իրենց պարտականություններն ու առաջադրանքները։

ՀԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ նշվեց, որ դեռևս մեծ է պլանային առաջադրանքները չկատարող ձեռնարկությունների թիվը։ Իսկ պլանային առաջադրանքները չկատարելը պետական կարգապահության ամենակոպիտ խախտումն է, որը բացասաբար է անդրադառնում մյուս ձեռնարկությունների պլանների կատարման վրա, քանի որ ձեռնարկությունների աշխատանքը սերտորեն կապակցված է միմյանց հետ։ Անբավարար են աշխատել, հատկապես, Լենինականի կոնդենսատորների, սառնարանային կոմպրեսորների, Հոկտեմբերյանի հաստոցաշինական, Չարենցավանի ներտաշ հաստոցների գործարանները, Երևանի մահուդի ֆաբրիկան և շատ ուրիշ ձեռնարկություններ։

Որպես տնտեսական օրինաչափություն պետք է աշխատանքի արտադրողականության աճը գերազանցի աշխատավարձի բարձրացմանը, մինչդեռ առանձին ձեռնարկություններում ընդհակառակը, աշխատավարձն է գերազանցում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերին։



Նման անհանդուրժելի երևույթի հանդիպում ենք Կամոյի սարքաշինական, Երևանի էլեկտրասարքատների, «Պոլիպլաստ», Լենինականի ոչ ոգելից խմիչքների գործարաններում, Երևանի ճկակահույքի ֆաբրիկայում, Արտաշատի մանվածքի-տրիկոտաժի կոմբինատում և այլ ձեռնարկություններում։ Արդյունաբերական ձեռնարկությունների մի մասն էլ ոչ լրիվ չափով են օգտագործում իրենց միջոցներն ու կարողությունները։ Արտադրական կարողություններն անբավարար են օգտագործվում Իջևանի գորգերի կոմբինատում, Երևանի դաշնամուրի ֆաբրիկայում, Սևանի ապակե մեկուսիչների գործարանում և այլ ձեռնարկություններում, որն զգալի վնաս է հասցնում մեր հասարակությանը, ժողովրդական տնտեսությանը։ 1971 թ. 9 ամիսների ընթացքում արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 11 տոկոսը չի կատարել արտադրանքի իրացման պլանը, իսկ 18 տոկոսը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքները։ Աշխատանքային կարգապահության խախտումները համեմատաբար շատ են շինարարական, տրանսպորտի և առևտրի բնագավառներում։ Շինարարական շատ կազմակերպություններ սիստեմատիկաբար թերակատարում և ձախողում են պլանային առաջադրանքները, լավ չեն օգտագործում հիմնական ֆոնդերն ու արտադրական կարողությունները։ Դեռ ավելին, «եթե մենք իրավունք ունենք դրական խոսք ասելու մեր շինարարների կատարած աշխատանքի ծավալի մասին,— նշեց ընկ. Ա. Քոչինյանը ՀԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— ապա, ցավոք, նույնը չենք կարող ասել աշխատանքի որակի վերաբերյալ։ Պետք է ամենայն խստությամբ նշել, որ շինարարական-մոնտաժային աշխատանքների որակը այսօր մեզ բավարարել չի կարող։ Հատկապես ցածր է բնակելի շենքերի կառուցման որակը»...

Տրանսպորտը այն բնագավառն է, որի հետ անմիջականորեն կապված են ժողովրդական տնտեսության բոլոր օղակները, մինչդեռ ստեղծվել է այնպիսի վիճակ, երբ առկա յուրաքանչյուր 2-րդ ավտոմեքենան կամ չի օգտագործվում, կամ չափազանց քիչ վազք է կատարում։ Աննորմալ երևույթ է այն, որ բարձր պահանջարկի, լարված երթևեկության ժամերի պայմաններում յուրաքանչյուր օր օգտագործվում է եղած ավտոբուսային պարկի միայն 55—65 տոկոսը։ Տրանսպորտի անբավարար աշխատանքի պատճառով հազարավոր մարդիկ բավականին ժամանակ են կորցնում կանգառներում, ուշանում աշխատանքից և վնաս հասցնում մեր ընդհանուր գործին։

Ժողովրդական տնտեսության մեջ աշխատող մարդկանց ճնշող մեծամասնությունը բարեխիղճ ու աղնվորեն է կատարում իր պարտականությունները աշխատանքում և հասարակական կյանքում, ցուցադրելով գիտակցական վերաբերմունք իր պարտականությունների նկատմամբ։ Սակայն չեն բացառվում դեպքեր, երբ առանձին անհատներ խախտում են սոցիալիստական համակեցության նորմաները, աշխատանքային կարգապահության կանոնները, դրանով իսկ խոչընդոտում մեր հասարակարգի զարգացման բուռն առաջընթացը։ Ծույլերը, պորտաբույծները, գործալիքները, գփողները և հակահասարակական այլ տարրեր ո՛չ միայն վնասում են ժողովրդական տնտեսությանը, այլև կազմալուծող տարր են հանդիսանում արտադրության մեջ և, որ առավել վնասակարն է, վատ օրինակ են ծառայում աճող սերնդին։

Եվ, պատահական չէ, որ կուսակցությունն ու կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում այդ հարցին։ Ցավոք, աշխատանքային կարգա-

պահության խախտումները երբեմն կատարվում են արտադրության ղեկավար և կոմունիստ ընկերների կողմից, ոտնահարելով այն կոչումն ու պաշտոնը, որը նրանց վստահել են կուսակցությունն ու կառավարությունը: Ձեռնարկությունների որոշ ղեկավարներ ոչ միայն չեն կատարում իրենց պարտականությունները, այլև զբաղվում են աչքակապությամբ, խաբեբայությամբ ու չարաշահումներով: Այսպես, օրինակ՝ վերջերս հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեն քննեց Երևանի ամրանների գործարանի ղեկավարների հարցը, որոնք ոչ միայն ձախողել են արտադրանքի իրացման առաջադրանքները, այլև զբաղվել են աչքակապությամբ. Նրանք զանազան ճանապարհներով ֆոնդատերերից ստանալով առաքվելիք արտադրանքի լրիվ արժեքը, նրանց ուղարկել են կամ աննշան քանակությամբ արտադրանք, կամ ոչինչ չեն ուղարկել: Մինչդեռ այդ գումարները ցույց են տվել իրացման պլանի հաշվետվության մեջ և նույնիսկ «պլանի գերակատարման» համար պարգևվատրվել:

Նման փաստեր կան ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում և օղակներում, որոնք պետական ու աշխատանքային կարգապահության խախտման հետևանք են:

«Կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացումը մեր կարևորագույն խնդիրներից մեկն է,— ՍՄԿԿ XXIV համագումարին տված զեկուցման մեջ նշեց ընկ. Բրեժնևը,— ընդ որում, մենք նկատի ունենք այն կարգապահությունը, որը կառուցված է ոչ թե վախի վրա, ոչ թե կոպիտ վարչարարության մեթոդների վրա, որոնք մարդկանց զրկում են վստահությունից, նախաձեռնությունից, ծնում են ինքնապահովագրում և անազնվություն: Խոսքը վերաբերում է այն կարգապահությանը, որը կառուցված է մարդկանց բարձր գիտակցության և պատասխանատվության վրա: Իսկ ինչ վերաբերում է այն աշխատողներին, որոնք խախտում են կարգապահությունը, քննադատություններից հետևություններ չեն անում, ճիշտ վարքագիծ չեն դրսևորում, ապա նրանց նկատմամբ պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռք առնվեն... Սոցիալիստական կարգապահությունը այն կարգապահությունն է, որը միասնական է հասարակության բոլոր անդամների համար, պարտադիր է բոլորի և ամեն մեկի համար»:

Համագումարում որոշակիորեն նշվեց, որ լայն մասսաների հետ տարվող աշխատանքների մեջ առաջին պլանում պետք է դրվի «Սովետական մարդկանց մեջ աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումը»:

Աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ձևավորումը, կարգապահության ամրապնդումը նպաստում են մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների վերացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու ժողովրդական տնտեսության զարգացմանը:

ՀԿԿ XXV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ ընկ. Ա. Քոչինյանը նշեց, որ «Տնտեսական օրգանների և կուսակցական կազմակերպությունների լուրջ թերություններից է այն, որ արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում ցածր է արտադրական և աշխատանքային կարգապահությունը, թույլ են տրվում աշխատաժամանակի մեծ կորուստներ: Արտադրական շատ օբյեկտներում անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվում աշխատուժի հոսունության պատճառները վերացնելու, աշխատանքային կարգապահությունը ամրապնդելու ուղղությամբ»:



Աշխատանքային կարգապահության խախտումները, աշխատուժի հոսունությունը և աշխատաժամանակի կորուստները զգալի չափերի են հասնում և մեծ վնաս հասցնում մեր առաջընթացին: Միայն 1970 թվականին հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններն են ընդունվել 96,8 հազար և, միաժամանակ, ազատվել ավելի քան 93 հազար բանվոր: Իրենց սեփական ցանկությամբ, գործալքման և կարգապահության այլ խախտումների պատճառով ազատված բանվորների թիվն անցնում է 69,4 հազարից: Աշխատուժի հոսունության պատճառներից են աշխատանքի և արտադրության ոչ ճիշտ կազմակերպումը, տրանսպորտի անբավարար աշխատանքը, մարդկանց նկատմամբ անուշադիր, սխալ վերաբերմունքը, նյութական շահագրգռվածության սկզբունքի անբավարար կիրառումը և այլն:

Բավականին մեծ են աշխատաժամանակի կորուստները: Միայն գործալքումներն ու ամբողջ օրվա պարապուրդները հանրապետության արդյունաբերության մեջ 1970 թ. կազմել են ավելի քան 445,6 հազար մարդ-օր, իսկ ադմինիստրացիայի թույլտվությամբ առաջացած աշխատաժամանակի կորուստը՝ ավելի քան 659,9 հազար մարդ-օր:

Եթե այս բոլորին ավելացնենք ժամանակի այն կորուստները, որոնք տեղի են ունենում չափից ավելի երկարատև ժողովների ու խորհրդակցությունների, դիմումների պատասխաններն իմանալու և անձնական հարցերը լուծելու, աշխատանքից ուշանալու ու գործի ժամին աննպատակ թափառելու և այլնի պատճառով, ապա ակնհայտ կդառնա, որ աշխատաժամանակի կորուստները երկրի մասշտաբով վիթխարի չափերի են հասնում: Մինչդեռ ժամանակի միավորի ընթացքում ներկայումս մեծ քանակությամբ նյութական բարիքներ են արտադրվում: Այժմ երկու օրվա ընթացքում հանրապետությունում ավելի շատ արտադրանք է թողարկվում, քան ամբողջ 1913 թվականին: Իսկ երկրի մասշտաբով՝ մեկ օրվա ընթացքում արտադրվում է ավելի քան երկու միլիարդ ռուբլու հանրային արտադրանք, այսինքն՝ տասն անգամ ավելի շատ, քան օրական արտադրվում էր 30-ական թվականների վերջերին: 1970 թ. աշխատանքի մեկ րոպեի ընթացքում արտադրվել է մոտավորապես 6 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 930 տոննա պողպատ, 3000 տոննա նավթ, 500 տոննա ածուխ և արտադրանքի բազմապիսի այլ տեսակներ: Աշխատաժամանակն անգնահատելի հարստություն է: Ամեն մի կոլեկտիվ, ամեն մի անհատ պետք է արդյունավետ օգտագործի աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեն, նրա մեջ տեսնելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության զարգացման, երկրի հզորացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ռեզերվներն ու հնարավորությունները:

Աշխատանքի կազմակերպման և աշխատանքային կարգապահության բարձրացման հարցերին հատուկ ուշադրություն պետք է նվիրեն ինչպես ձեռնարկությունների ղեկավարներն ու կազմակերպությունները, այնպես էլ վերադաս օրգանները, օգտագործելով բոլոր հնարավոր միջոցներն ու մեթոդները: Պետք է նկատի ունենալ, որ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի առաջադրանքների հաջող կատարումը մեծապես պայմանավորված է աշխատանքի լավ կազմակերպմամբ ու կարգապահությամբ:

Թ. Դ. ՉԱԼՅԱՆ

անցնելուց հետո, անխուսափելիորեն պետք է թուլանար կառավարման տերիտորիալ-տնտեսական սկզբունքը, մի բան, որ չէր կարող չանդրադառնալ համապատասխան տնտեսական շրջանների ընդհանուր զարգացման վրա: Նոր պայմաններում, գիտա-արտադրական խոշոր միավորումներ ստեղծելիս, պետք է վերականգնվի նաև կառավարման տերիտորիալ-տնտեսական սկզբունքը, որը կապահովի շրջանի էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացումը, ճյուղային պլանների օրգանական զուգորդումը միութենական հանրապետություններին ու խոշոր տնտեսական շրջաններին տրված առաջադրանքների հետ: Ուստի, հանրապետությունների, երկրամասերի և մարզերի ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլաններում ճյուղերի զարգացման հիմնական ցուցանիշները պետք է սահմանվեն նաև տերիտորիալ տեսակետից:

## 3. ՄԻԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ԱՐՏԱՍԱՀՄԱՆՅԱՆ ԵՎ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՓՈՐՁԸ

ՍՍՀՄ ԳԱ ԱՄՆ-ի ինստիտուտի տվյալներով, արտասահմանյան մի շարք ֆիրմաներում գիտահետազոտական աշխատանքն իր նշանակությամբ հավասարվել է բուն արտադրության, վաճառահանման, արտադրանքի և ֆինանսավորման հետ: Մասնավոր ձեռնարկատերերը համոզված են, որ հետազոտական աշխատանքը բարձր շահույթներ է բերում, ուստի զարմանալի չէ, որ նրանք լայն գիտահետազոտական աշխատանքներ են ծավալել իրենց ձեռնարկություններում: Վերջին տասնամյակում ԱՄՆ-ում, Ճապոնիայում, ԳՖՀ-ում և կապիտալիստական մի շարք այլ երկրներում գիտահետազոտական աշխատանքը ձեռք է բերել հասարակության առաջադիմության ու տնտեսական զարգացման գլխավոր ռեսուրսի համբավ: ԱՄՆ-ում գիտությանը հատկացված միջոցների 95 տոկոսը ծախսվում է կիրառական, այսինքն՝ հիմնականում արդյունաբերության համար կատարվող հետազոտությունների վրա:

Արտասահմանյան ֆիրմաների փորձը ցույց է տալիս, որ գիտությունը ֆինանսավորում են հատկապես արտադրության համար: Գիտական ստորաբաժանումների առյուծի բաժինը պետք է սնվի և աճի արտադրության հետ միասին: Անիմաստ է գիտահետազոտական ինստիտուտները կտրել խոշոր արտադրական միավորումներից: Այլապես վերջինները հարկադրված կլինեն ստեղծել զանազան գիտական լաբորատորիաներ, իսկ դրա հետևանքով արտադրության ցանցի մեջ չմտնող գիտական ստորաբաժանումները կմեկուսանան ու կկտրվեն նրա պահանջմունքներից:

Վերլուծելով ԱՄՆ-ի գործարար շրջանների փորձը, Ն. Ն. Սմելյակովը գրում է. «Անհրաժեշտ է ասել, որ փորձարարությունն ամերիկյան պայմաններում բավական սովորական երևույթ է: Փորձեր են անում ֆերմերն ու արդյունաբերողը, վաճառողն ու տրանսպորտային աշխատողը, էլ չխոսենք գիտության մարդկանց մասին: Բանը միայն էքսպերիմենտի մասշտաբներն են ու դրա արդյունքները:

Այդ տեսակետից հետաքրքրական են ամերիկյան բիզնեսմենների, այդ թվում Ռ. Հարստի, Ս. Իտոնի, Վ. Թերտերի, Ֆորդի, Պիկերսի, Դյուպոնների և այլոց տնտեսություններում ձեռք բերված նվաճումները: Այսպես, Հարստը խիստ օպտիմալացնում էր ամեն ինչ՝ սկսած աշխատողների թվաքանակից, նրանց ֆունկցիոնալ պարտականություններից մինչև սպասարկման ու վերանորոգման մեթոդների և միջոցների սահմանումը: Դա շատ կարևոր է, հայտնի է, թե աշխատանքի վրա որքան բացասաբար են անդրադառնում անկազմակերպվածությունը, անտնտեսվարությունը և կարգ ու կանոնի բացակայությունը: Ամեն մի արտադրություն պետք է թողնի հիանալի կազմակերպված տնտեսության տպավորություն:

«Ամեն ինչ պետք է իր տեղում լինի և ձգված», այդ թվում ռացիոնալ կերպով տեղավորված շինությունները, սարքավորումը, ինվենտարը, կազմտեխնիկայի միջոցները, նյութերը և այլն: Մեր տնտեսավարները արտասահմանյան փորձից պետք է վերցնեն այն ամենը, ինչ իրոք արժեքավոր է և օգտակար, օրինակ՝ աշխատաժամանակի, մարդկային ռեզերվների ռացիոնալ օգտագործումը, ըստ ամենայնի վերացնելով ավելորդ, չօգտագործվող հաստիքները:

Հաճախ կարելի է լսել աշխատողներին կրճատելու և նույն աշխատանքն ավելի փոքր անձնակազմով կատարելու հնարավորության մասին, եթե համապատասխանաբար փոխվի վարձատրությունը:

Իհարկե, տնտեսության սոցիալիստական սիստեմն արմատապես բացառում է գործազրկությունը, բայց անհանդուրժելի է նաև այն, երբ ուռճացվում և բավականաչափ լրիվ չեն օգտագործվում հաստիքները, դրանով իսկ առաջացնելով աշխատուժի կամ մարդկանց ռեզերվների պակաս մյուս օբյեկտներում և տեղամասերում: Անթույլատրելի է, երբ որոշ ձեռնարկություններում մարդիկ աշխատում են անեռանդ, լրիվ չծանրաբեռնված, իսկ մյուսները կադրերի խիստ պակաս են զգում: Կադրերի անտնտեսվար օգտագործման դեմ պետք է վճռական պայքար մղել, հարկավոր է խորապես ուսումնասիրել իրավիճակը, ավելի համարձակ հայտնաբերել չօգտագործված մարդկային ռեզերվները՝ դրանց միավորման մյուս ստորաբաժանումներում կամ ձեռնարկություններում ներգրավելու համար:

Արտադրության ավտոմատացման հետևանքով պետք է կրճատվի գործատեղերի քանակը. մյուս կողմից առաջ է գալիս ավելի որակյալ կադրերի կարիք, որոնց պատրաստումը պետք է կրի պլանային բնույթ: Ցավոք, պետք է արձանագրել, որ ձեռնարկություններում ու կազմակերպություններում պատշաճ աշխատանք չի կատարվում ներկայի և ապագայի կադրերի որակական կազմի վերլուծման նպատակով, այդ կազմը տեխնիկական առաջընթացի պահանջներին համապատասխանեցնելու համար: Սովորաբար այդ աշխատանքը սահմանափակվում է աշխատողների ընդունմամբ և ազատմամբ: Այդ ծառայությունը երբեմն կատարում են կիսագրագետ, հաճախ որոշակի պրոֆեսիա չունեցող մարդիկ: Մինչդեռ կադրերի գործը պետք է ղեկավարել գիտական հիմունքներով: Որքան էլ պարադոքսային է, արտասահմանյան շատ ֆիրմաներում սիստեմատիկորեն ուսումնասիրում են կադրերի վիճակը, պարբերաբար կատարում են կոնկրետ-սոցիոլոգիական հետազոտություններ, որպեսզի կարողանան կանխատեսել կադրերի քանակական ու որակական աճը, այն կապելով ձեռնարկությունների կազմակերպման և կառուցվածքի հետ: Հաշվի են առնում, որ մասնագետն ամբողջ կյանքում պետք է սովորի և կատարելագործի իր գիտելիքները, թեև բոլորին չէ, որ հաջողվում է անհատապես վերացնել իր պակասությունները:

Կադրերի դաստիարակությունը և ուսուցումը մեր միավորումներում պետք է այնպես կազմակերպել, որ ամեն մարդ աշխատանքային գործունեության ընթացքում շարունակ հարստացնի իր գիտելիքներն ու մեթոդները: Հետևաբար, կադրերն ամենուրեք պետք է գործեն գիտական մեթոդներով և հաստատ համոզված լինեն, որ միայն գիտության միջոցով կարելի է առաջ ընթանալ: Արտասահմանյան արդյունաբերական ֆիրմաների՝ գիտա-արտադրական կոմպլեքսների պրակտիկ գործունեությունը ցույց է տալիս, որ արդյունաբերական բոլոր հետազոտությունների մոտ 90 տոկոսը կենտրոնացված է 5000 և ավելի աշխատող ունեցող խոշոր ֆիրմաներում: Այդ խնդրի լուծումն անջատ-անջատ գործող մանր ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների և լաբորատորիաների ուժերից վեր է: Միայն խոշոր ֆիրմաներն են ի վիճակի լավագույն ձևով կատարելագործելու կառավարման սիստեմը, ռացիոնալ կերպով տեղաբաշխելու գիտական և ինժեներա-տեխնիկական աշխատողներին:

Ներկայումս մեզ մոտ շատ բուհեր և ակադեմիական ստորաբաժանումներ ձգտում են անմիջականորեն կապվել արտադրության հետ, շրջանցելով ճյուղային գիտահետազոտական ստորաբաժանումները, իսկ վերջիններս, իրենց հերթին, ինքնուրույն կերպով կատարում են որոշ հիմնարար հետազոտություններ, ընդ որում թե՛ մեկը, թե՛ մյուսը պատշաճ մակարդակով չեն իրականացվում: Նման երևույթը բացատրվում է նրանց միավորող և ուղղություն տվող վարչա-կառավարչական ծառայության բացակայությամբ:

Ակադեմիկոս Յա. Կոլոտիրկինի կարծիքով, միավորումներում պետք է ունենալ ակադեմիական ինստիտուտների հետ սերտորեն կապված տեխնոլոգիական կազմակերպություններ. «Գիտության նվաճումների արագ յուրացումն ապահովելու համար,— ասում է Յա. Կոլոտիրկինը,— այդ կազմակերպությունները պետք է իրենցից ներկայացնեն ինժեներա-տեխնիկական հզոր ստորաբաժանում՝ փորձնական լավ բազայով»:

Սակայն այստեղ ակադեմիկոս Յա. Կոլոտիրկինը չի նշում, թե ինչպես ապահովել «սերտ կապը ակադեմիական ինստիտուտների հետ»: Բանն այն է, որ նման կապը պետք է լինի նաև ներկայումս, մինչդեռ այն չի ապահովվում, քանի որ չկա միասնական վարչա-կառավարչական օրգան: Այդ կապակցությամբ ուշադրության արժանի է ՍՍՀՄ ԳԱ Սիբիրի բաժանմունքի աշխատողների փորձի ուսումնասիրությունը, որոնք ձգտում են այդ կապն իրականացնել երկակի ենթակայության նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների ձևով: Մեր կարծիքով սա այն դեպքն է, երբ պետք է որոշ չափով բարդացնել և լրացուցիչ կերպով ընդլայնել կառավարման ապարատը: Պրակտիկան ցույց է տալիս, որ վարչա-կառավարչական անձնակազմի կրճատումն ընդհանուր առմամբ էական խնայողություն է տալիս ժողովրդական տնտեսությանը, բայց կան տեղամասեր էլ, որտեղ այդ անձնակազմը նորից պետք է ստեղծել: Արտադրության հետ ակադեմիական ինստիտուտների կապը բարելավելու համար նրանք իրենց հաստիքներում պետք է ունենան արտադրությունից եկած մարդիկ: Մինչդեռ ակադեմիական ինստիտուտների կադրերը համալրվում են հիմնականում ի հաշիվ բուհերի շրջանավարտների, որոնք, թեև ժամանակի ընթացքում աճում ու դառնում են գիտական աշխատողներ և ստորաբաժանումների ղեկավարներ, բայց, չունենալով արդյունաբերության մեջ կատարած աշխատանքի փորձ, չեն կարող ծանոթ լինել նրա կարիքներին, գիտության նվաճումների ներդրման ձևերին ու մեթոդներին:

Այս բոլորը դարձյալ խոսում է համապատասխան գիտա-արտադրական միավորումներ ստեղծելու օգտին, ընդ որում այդ միավորումների մեջ մտնող ակադեմիական ստորաբաժանումները պետք է ունենան երկակի ենթակայություն: Այդ պահանջը պետք է պարտադիր լինի, եթե մենք չենք ուզում ապակողմնորոշել ակադեմիական ստորաբաժանումներին, շեղել նրանց հիմնարար հետազոտություններից՝ հօգուտ նեղ արտադրա-

կան ճյուղային հետազոտությունների և, ընդհակառակը, արտադրությունը չդարձնել գիտական ստորաբաժանումների փորձադաշտ, արհեստականորեն իջեցնելով ժողովրդատնտեսական պլանները:

Խոշոր միավորումների ստեղծման փորձն այժմ օգտագործում են նույնիսկ ուսումնական ստորաբաժանումները, թեև դեռ հայտնի չեն դրա արդյունքները: Այսպես, Հյուսիսային Կովկասում ստեղծվում է բարձրագույն դպրոցների՝ երկրում առաջին գիտական կենտրոնը, որն ընդգրկելու է ինստիտուտներ, Ռոստովի պետական համալսարանի, Կրասնոդարի և Նովոչերկասկի պոլիտեխնիկական ինստիտուտների, Տագանրոգի ռադիոտեխնիկական ինստիտուտի և Ռոստովի ինժեներա-շինարարական ինստիտուտի պրոբլեմային ու ճյուղային լաբորատորիաները:

Նախատեսվում է նաև գիտական կենտրոնի մեջ մտցնել նոր կազմակերպվող ֆիզիկայի, օրգանական քիմիայի և նեյրոկիբեռնետիկայի ինստիտուտները:

Արտադրության հետ կապերն ընդլայնելու, նրա կարիքները հոգալու և գիտական հետազոտությունների արդյունավետությունը բարձրացնելու նպատակով, Հյուսիսային Կովկասի գիտական կենտրոնին իրավունք է վերապահված սահմանված կարգով ստեղծել տնտհաշվարկային կոնստրուկտորական բյուրոներ և փորձնական արտադրություններ:

Տնտեսավարման նոր պայմանները մեծապես խթանեցին արտադրության կազմակերպման նոր ձևերի արմատավորմանը, որը հնարավորություն կտա հեշտությամբ, փոքր ծախսերով լուծելու տեխնիկական առաջադիմության շատ պրոբլեմներ: Պրակտիկան հաստատել է, որ ռեֆորմի արմատավորումից ամենից ավելի շահել են խոշոր ձեռնարկություններն ու ֆիրմաները՝ ի դեմս գիտա-արտադրական կոմպլեքսների:

### 4. «ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ» ՄԻԱՎՈՐՈՒՄ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՀԵՌԱՆԿԱՐԻ ՄԱՍԻՆ

Այդպիսի խոշոր գիտա-արտադրական միավորման ստեղծումը հավասարապես անհրաժեշտ է հանրապետության գունավոր մետալուրգիայի բոլոր ձեռնարկություններին ու կազմակերպություններին: Այդ միավորումը պետք է ընդգրկի ինչպես արդյունաբերական, այնպես էլ գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունները:

Ինչպես հայտնի է, ներկայումս հանրապետության գունավոր մետալուրգիայի բոլոր արդյունագործական ձեռնարկությունները ենթարկվում են Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր գունավոր մետալուրգիայի վարչությանը, իսկ գիտա-հետազոտական և նախագծային կազմակերպությունը (Հայաստանի գունավոր մետալուրգիայի գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտը) մի այլ վարչության՝ Գլավցվետմետնիպրոյեկտին (գունավոր մետալուրգիայի գիտահետազոտական և նախագծային գլխավոր վարչություն), որը գտնվում է Մոսկվայում:

Նման վիճակը շատ անհարմարություններ է ստեղծում և չափազանց դժվարացնում տեխնիկական պրոգրեսի նվաճումների արմատավորումը արդյունաբերության մեջ: Երբ առաջ հայրենական լեռնահանքային և մետալուրգիական արդյունաբերությունը ներկայացնում էին անջատ-անջատ գործող առանձին հանքերը, կոմբինատները, ինստիտուտները և այլն, ապա այժմ ձեռնարկությունների այդպիսի մեկուսացած վիճակը լուրջ դժվարություններ է հարուցում:

Մենք սովոր ենք տնտեսական առօրյա թերությունները, պլանների թերակատարումը, առաջավոր տեխնիկայի արմատավորման հետ կապված դժվարությունները և այլն վերագրել առանձին մարդկանց թերացումներին, նրանց գործողությունների անհամաձայնեցվածությանը, իսկ ամենից շատ՝ մեղադրել միայն տնտեսության ղեկավարին: Իրականում թերությունները պետք է որոնել ոչ այնքան բուն ձեռնարկություններում, որքան դրանց կառավարման սիստեմում: Պրակտիկայում հաճախ են նկատվել չհամաձայնեցված գործողությունների մի շարք դեպքեր գունավոր մետալուրգիայի հանրապետական վարչության, գունավոր մետալուրգիայի գիտա-հետազոտական ու նախագծային ինստիտուտի և առանձին ձեռնարկությունների միջև: Գիտա-հետազոտական ու նախագծային ստորաբաժանումների և արդյունաբերական ձեռնարկությունների գործողությունների անհամաձայնեցվածության փաստերը վկայում են, որ տնտեսական մեխանիզմի օղակները բավականաչափ համակցված չեն և վերոհիշյալ օբյեկտների միջև գործող կապի սիստեմը ճիշտ չի կազմակերպված: Մինչդեռ այդ կոլեկտիվների աշխատանքի լիակատար համաձայնեցվածությունը հնարավորություն կտար ավելի արագ ու լավ յուրացնելու կարողությունները, ռացիոնալ օգտագործելու գիտական ու արտադրական կադրերը, կազմակերպելու նոր ստորաբաժանումներ և այլն, իսկ դա թույլ կտար ավելացնելու արտադրանքի թողարկումը: Կոլեկտիվների գործունեության անհամաձայնեցվածությամբ կարելի է բացատրել այն փաստը, որ արդյունաբերական ձեռնարկությունների պայմանագրային գիտական թեմատիկայի մի մասն անցյալում սիստեմատիկորեն շրջանցում էր լեռնա-մետալուրգիական գիտա-հետազոտական ինստիտուտը, իսկ վերջինիս առաջ քաշած շատ հարցեր մերժվում էին գունավոր մետալուրգիայի հանրապետական վարչությունում:

Հանրապետության գունավոր մետալուրգիայի յուրաքանչյուր ձեռնարկություն, իր հերթին, ջանում է առաջ քաշել բազմաթիվ առանձին, մանր հարցեր, որոնք ինքը պետք է լուծի. մինչդեռ դրանցով պետք է զբաղվեր և պատասխան տար լեռնա-մետալուրգիական ինստիտուտը (այժմ՝ գունավոր մետալուրգիայի գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտը), փաստորեն դառնալով նրանց տեխնիկական ծառայությունների կցորդը: Դա, անշուշտ, առաջ է բերում գիտական ինստիտուտի բազմաթեմայնություն և թեմատիկայի պլանավորման կարճատևություն: Եվ, զարմանալի չէ, որ ոչ լեռնա-մետալուրգիական գիտա-հետազոտական ինստիտուտը, ոչ էլ գունավոր մետալուրգիայի գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտը չկարողացան անել և դառնալ գիտական ու նախագծային խոշոր կազմակերպություններ, միևնույն ժամանակ ձեռնարկություններում արտադրության կուլտուրան ցածր է, գերակշռում է ձեռքի աշխատանքը, չեն արմատավորվում արտադրության կառավարման, կոմպլեքսային մեքենայացման և տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման ժամանակակից մեթոդներն ու միջոցները: Գունավոր մետալուրգիայի մինիստրությունը հանրապետությունում չունի ավտոմատացման ստորաբաժանում, այդպիսին չունի նաև գունավոր մետալուրգիայի գիտա-հետազոտական ու նախագծային ինստիտուտը: Նախատեսվում էր այդ պահանջն ինչ-որ չափով բավարարել Կիրովականի «Ավտոմատիկա» ինստիտուտի ստեղծմամբ: Ցավոք, գունավոր մետալուրգիայի վարչության և ձեռնարկությունների գործողությունների անհամաձայնեցվածության պատճառով, այդ ինստիտուտը պատվերներից շատերն ապսպրում է հանրապետության սահմաններից դուրս, աչքաթող անելով իր հիմնական խնդիրներից մեկը:

Վերջին ժամանակներս, տնտեսավարման նոր մեթոդներին անցնելու պատճառով, անհրաժեշտ է խորացնել տնտհաշվարկային հարաբերությունները և ավելի շատ ինքնուրույնություն տալ առանձին ձեռնարկությունների. սակայն չափից ավելի մեկուսացած և բացարձակապես անկախ ձեռնարկությունները կարող են վնաս հասցնել առաջին հերթին իրենց: Առանձին մանր ձեռնարկությունների եկամուտը չի բավականացնի արտադրանքի թողարկման ավելացմանը կամ նոր տեխնիկայի նվաճումների արմատավորմանը. դրանք ի վիճակի չեն ժամանակին մարելու պետական վարկերը, որոնց ռեսուրսներն անսահմանափակ չեն: Այդպիսի ոչ խոշոր ձեռնարկություններից են հանրապետության գունավոր մետալուրգիայի մի շարք օբյեկտներ, որոնք տերիտորիալ պայմանների հետևանքով առանձնապես սուր են զգում բարձրորակ կադրերի կարիքը և իրենց համեստ ու փոքրաթիվ տեխնիկական ծառայություններով ի վիճակի չեն կատարելու արտադրական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման լուրջ մշակումներ:

Համաձայնեցվածությունը հնարավոր է ապահովել միայն միավորումների՝ խոշոր գիտա-արտադրական կոմպլեքսների միջոցով, այդպիսի միավորման մեջ մտցնելով հանրապետության գունավոր մետալուրգիայի բոլոր ձեռնարկություններն ու գիտա-հետազոտական և նախագծային ինստիտուտը (հնարավոր է՝ վերջինիս գլխավորությամբ), ինչպես և դրանց սպասարկող մի քանի այլ ձեռնարկություններ: Այդպիսի միավորման մեջ անպայման պետք է ունենալ արտադրության պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման ինստիտուտ կամ կոնստրուկտորական բյուրո: Դրանով իսկ միավորումն իրենից կներկայացնի մասնագիտացված ձեռնարկությունների կոմպլեքս, որոնցից յուրաքանչյուրը կբեռնաթափվի իր պրոֆիլին ոչ-հատուկ զանազան աշխատանքներից:

Հանրապետության գունավոր մետալուրգիայի օբյեկտների հիման վրա նման միավորման ստեղծումը չի նշանակում ձևականորեն «Հայաստանի գունավոր մետալուրգիային» ենթարկել գիտական ու նախագծային կազմակերպությունները, դրանով իսկ մինիստրական գլխավոր վարչության ցուցանակը փոխարինելով միավորման ցուցանակով: Այդպիսի միավորումը պետք է լինի միասնական տնտհաշվարկային մի ստորաբաժանում, որը մասնակցում է տնտեսական շրջանառությանը և պատասխանատու է բոլոր օղակների վիճակի համար: Միավորումը պետք է ունենա միասնական գիտատեխնիկական քաղաքականություն վարող գիտական խորհուրդ, որը պետք է լուծի բոլոր ներքին խնդիրները՝ սկսած գիտական որոնումից ու մշակումից, մինչև սարքավորման պատրաստումը, մոնտաժումն ու կարգավորումը տեխնոլոգիական բոլոր փուլերում:

Միավորման մեջ մշակված ու գործող նյութական խրախուսման սիստեմը, կառավարման գոյություն ունեցող մեթոդների հետ մեկտեղ, պետք է ապահովի նրա բոլոր օղակների հստակ փոխգործողությունը: Ուստի, «Հայաստանի գունավոր մետալուրգիա» գիտա-արտադրական կոմպլեքսի ստեղծումն է այն գործելակերպը, որը հնարավորություն կտա լիովին օգտագործելու հանրապետության գունավոր մետալուրգիայի աճի և հետագա զարգացման ռեզերվները:

Ա. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆ
(տեխնիկական գիտությունների թեկնածու)
Վ. Թ. ԱՂԱԲԵԿՅԱՆ

# ՀԿԿ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ

*Հայրենական մեծ պատերազմը սովետական ժողովրդի, սոցիալիստական հասարակարգի դժվարին քննությունն էր պատմության առջև. այն մարդկության տարեգրության աննախադեպ հերոսապատումների ամենանվիրական էջն է։ Հայրենական պատերազմում դրսևորվել են սոցիալիստական հասարակարգի կենսունակությունը ո՛չ միայն ռազմական գործողությունների թատերաբեմում, այլև թիկունքում, ֆաշիստական զավթիչներից ազատագրված շրջանների տնտեսությունը վերականգնելու գործում։*

* * *

*Մեծ հայրենականի պատմության մեջ ֆաշիստական զավթիչներից ազատագրված շրջանների տնտեսության վերականգնման պրոբլեմը, մանավորապես վերջին շրջանում, պատմագիտության ուշադրությանն է արժանացել։ Նման հետաքրքրասիրությունը բացատրվում է նրանով, որ Հայրենական պատերազմի պատմության բազմակողմանի ու խոր ուսումնասիրությունը պահանջում է հետազոտել նաև այդ շատ կարևոր հարցը, առանց որի գալիք սերունդները դժվար կպատկերացնեն կուսակցության ու ժողովրդի ջանքերը ազատագրված շրջանների տնտեսության վերականգնման բնագավառում։*

*Հայտնի է, որ կուսակցական և սովետական մարմինները գերմանական զավթիչներից ազատագրված շրջանների տնտեսության վերականգնման աշխատանքներն սկսել են կարմիր բանակի հակագրոհի հենց սկզբից։ Ճիշտ են այն պատմաբանները, որոնք գերմանական զավթիչներից ազատագրված շրջանների տնտեսության վերականգնման աշխատանքները բաժանելով երեք փուլի, գտնում են, որ առաջինն սկսվում է 1942 թվականի սկզբից՝ Մոսկվայի մարզի ազատագրումով, երկրորդը՝ 1943 թվականից մինչև պատերազմի վերջը, երրորդը՝ 1946—1950 թվականներն են* (Г. Морехина, Рабочий класс —фронту, М., 1962, стр. 212—213, М. Козыбаев, Компартия Казахстана в период Великой Отечественной войны, Алма-Ата, 1964, стр. 298):

*Սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ ընդունեց ազատագրված շրջանների տնտեսության վերականգնման վերաբերյալ Պաշտպանության պետական կոմիտեի, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի և ՍՍՀՄ ժողկոմսովետի որոշումները։ Հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, կուլտուրական և ուսումնական հաստատություններում, ամենուր տեղի էին ունենում միտինգներ ու ժողովներ, ուր սովետական մարդիկ պատրաստակամություն էին հայտնում ամեն ինչով օգնելու ազատագրված շրջանների տնտեսության վերականգնմանը։ Յարոսլավլի և Իվանովոյի մարզերի կոլտնտեսականների նախաձեռնությամբ երկրում սկսվեց շարժում՝ ազատագրված շրջաններին մթերքով ու անասուններով օգնելու համար։ Այդ օրերին* «Правда»*-ն գրում էր. «Մեր երկիրը գործարար լայն մասսայական օգնություն կազմակերպելով ազատագրված շրջանների բնակչությանը, կրկին ու կրկին ցույց է տալիս, թե որքան ամրակուռ և անխախտ է սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը» (1943, 19-ը փետրվարի)։*

*Ազատագրված շրջանների տնտեսության վերականգնմանը, եղբայրական մյուս հանրապետությունների ժողովուրդների հետ միասին, օգնության ձեռք մեկնեց նաև հայ ժողովուրդը։ 1943 թ. փետրվարին Երևանի Կիրովի անվան գործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները և ծառայողները հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողներին ուղղած իրենց դիմումում գրում են. «...ազատագրված շրջանների տնտեսության վերականգնումը պետական հսկայական կարևորություն ունեցող գործ է։ Հայաստանի արդյունաբերության աշխատողներս նույնպես պետք է մեր եղբայրական հայրենասիրական պարտքը կատարենք... Մենք որոշեցինք մեր միջոցներից ազատագրված շրջանների բնակչությանը հատկացնել 8000 էմալե բաժակ, 1000 թեյնիկ և 3600 կաթսա» («Սովետական Հայաստան» թերթ, 1943 թ., 23-ը փետրվարի)։ Արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները, արձագանքելով կիրովցիների կոչին, միտինգներում, ժողովներում պարտավորվում էին իրենց ուժերի ներածին չափ օգնել ազատագրված շրջաններին։ Երևանի Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանի բանվորները ազատագրված շրջանների բնակչությանը հատկացրին իրենց 4 օրվա աշխատավարձը և խոստացան ուղարկել տնային օգտագործման իրեր (նույն տեղը, 27-ը փետրվարի), իսկ № 92 գործարանի կոլեկտիվը որոշեց իրենց օժանդակ տնտեսությունից տրամադրել 20 ոչխար, 1 կով, 25 կգ յուղ, 50 կգ պանիր և 50 կգ արևածաղկի յուղ (նույն տեղը)։*

*«Գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում տնտեսության վերականգնման անհետաձգելի միջոցառումների մասին» ՍՍՀՄ ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1943 թ. օգոստոսի 21-ի որոշումից հետո վերականգնման աշխատանքներն ընդունեցին համաժողովրդական բնույթ։ Այդ որոշումից հետո ավելի մեծ չափերի հասավ Հայաստանի աշխատավորության բազմապիսի օգնությունը՝ ազատագրված շրջանների քաղաքների, արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրական հիմնարկությունների վերականգնմանը։*

*Հատկապես մեծ էր հանրապետության օգնությունը լեգենդար Ստալինգրադին։ Ստեփանավանի շրջանի կոլտնտեսականները, կուսակցության շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ, մի քանի ամսվա ընթացքում հավաքեցին և Ստալինգրադ ուղարկեցին մեկ միլիոն 266 հազար ռուբլի, իսկ մինչև 1945 թ. փետրվար ամիսը մոտ 10.000 փութ կարտոֆիլ, 3000 փութ ցորեն, մեծ քանակությամբ անասուն, սննդամթերք («Սովետական Հայաստան» թերթ, 1945, 2-ը փետրվարի)։ Այդ գործում աչքի ընկան Կուրթանի կոլտնտեսականները։*

*Ստալինգրադցիները երախտագիտության խոսք ուղղեցին հայ ժողովրդին, Ստեփանավանի շրջանի աշխատավորությանը։ Ստալինգրադի քաղկոմի քարտուղար Պիկսինը ՀԿ(բ)Կ Ստեփանավանի շրջկոմի քարտուղար Գ. Մանուկյանին ուղարկած հեռագրում նշում էր. «Ստալինգրադցիները շնորհակալություն, մեծ շնորհակալություն են հայտնում Հայկական ՍՍՀ Ստեփանավանի շրջանի աշխատավորներին՝ նրանց եղբայրական օգնության համար։ Ստալինգրադի վերականգնման ֆոնդում Ստեփանավանի աշխատավորները մուծել են 1 մլն 266 հազար ռուբլի։ Ամբողջ սրտով ցանկանում ենք ձեզ նորանոր հաջողություններ գյուղատնտեսության բոլոր բնագավառներում» («Սովետական Հայաստան» թերթ, 1943, 22-ը հոկտեմբերի)։*

*Հերոս քաղաքի օգնության ֆոնդը հարստանում էր նաև հանրապետության մյուս շրջաններից հավաքած միջոցներով (Հոկտեմբերյան, Նոյեմբերյան, Ախտա, Արտաշատ և այլն)։ Արտաշատի շրջանի Եղվարդ գյուղի կոլտնտեսության նախագահ Հաբեթ Սահակյանը օգնության ֆոնդին մուծեց 100.000 ռուբլի (նույն տեղը, 27-ը փետրվարի)։*

*Ստալինգրադի վերականգնման ֆոնդի ստեղծմանը մասնակցում էր հանրապետության ողջ աշխատավորությունը։ ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար Գ. Հարությունյանը Ստալինգրադի մարզկոմի քարտուղար Չույանովին ուղղած հեռագրում (28/5-43 թ.) հայտնում էր, որ Հայաստանի բանվորները, ծառայողները, մտավորականությունը Ստալինգրադի վերականգնման ֆոնդի համար հավաքել են 4 մլն 489 հազար ռուբլի, որից պետբանկի հատուկ հաշվին փոխանցվել է արդեն 4 մլն 295 հազար ռուբլի։ Արթիկ-տուֆի բանվորները ցանկություն են հայտնել պլանից դուրս ուղարկել 7 հազար խմ վարդագույն տուֆ (ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 32, գ. 69, թ. 138)։*

*Ստալինգրադի մետալուրգիական գործարանի վերականգնմանը անմիջական մասնակցություն ցույց տվին Հայաստանի երիտասարդության մոտ 200 ներկայացուցիչ, որոնք հավատարիմ իրենց խոստմանը, անձնվեր աշխատանքով բարձր պահեցին հայ ժողովրդի պատիվը։ Կոմերիտական Հարություն Վարդանյանը դարձավ* «Красный октябрь» *մետաղաձուլական գործարանի առաջավոր բանվորներից մեկը։ Այդ գործարանի գլխավոր ինժեներ Պարույր Մաթևոսյանը գլխավորեց գործարանի վերականգնման աշխատանքները և հետագայում դարձավ նրա դիրեկտորը։*

*Հայաստանի աշխատավորության կողմից Ստալինգրադի վերականգնման համար օգնության միջոցների հավաքումը կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների ղեկա-*



# ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՔԱՂԱՔՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆԸ

*Սովետական Միության ժողովուրդների պատմական նվաճումներում առանձնակի տեղ է գրավում քաղաքաշինությունը։ Հազարավոր նոր քաղաքների առաջացումն ու զարգացումը սովետական ժողովուրդների եղբայրության համոզիչ վկայություններից են։*

*Սովետական կարգերի օրոք, ինչպես ՍՍՀՄ-ում, նույնպես և մեր հանրապետությունում, կառուցվեցին և վերակառուցվեցին բազմաթիվ նոր քաղաքներ, բանավաններ և բարեկարգ գյուղեր։ Դրանցից մեկը Արարատյան դաշտավայրում վեր խոյացած Հոկտեմբերյան քաղաքն է, որն անընդհատ բարգավաճում, ընդարձակվում, գեղեցկանում է։ Երբեմնի ամայի Սարդարապատը վաղուց դարձել է բարեկարգ քաղաք, կոչվել մեծ Հոկտեմբերի անունով։ Այդ քաղաքի ստեղծմանն ու զարգացմանն է նվիրված Կ. Ս. Կոզմոյանի* Հոկտեմբերյան[1] *խորագրով մենագրությունը։*

*Ուշագրավ է հեղինակի մտահղացումը— իր ուսումնասիրություններով հարստացնել Սովետական Հայաստանի քաղաքների ու գործարանների պատմության մատենաշարը. ուսումնասիրել, ժամանակակից և ապագա ընթերցողներին ներկայացնել սոցիալիստական վերակառուցվող ու նորոգ քաղաքների պատմությունն ու ներկան, ականատեսի գրչով նկարագրել այն ակներև ավանդը, որ ներդնում են իր հայրենակիցները սովետական բազմազգ երկրի ժողովուրդների նըվիրական գործում՝ կոմունիզմի կառուցման ոլորտում։ Եվ ահա այս նոր աշխատությունը եկավ ավելացնելու նրա՝* Լենինական, Ալավերդի, Երևանի Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի 50 տարին *և* Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի 25 տարին *մենագրությունների ցանկը։*

*Գրախոսվող գիրքը բաղկացած է վեց գլխից։ Առաջին գլխում* (Պատմական անցյալից) *Կ. Կոզմոյանն ընթերցողներին պատմում է Հոկտեմբերյանի պատմական հուշարձանների, Երվանդունիների հայկական պետության մայրաքաղաքի՝ Արմավիրի հիմնադրման մասին։*

*Պետականությունից զուրկ հայ ժողովուրդը, գտնվելով Պարսկաստանի և սուլթանական Թուրքիայի լծի տակ, կողոպտվում և շահագործվում էր։ «Հայ ժողովրդի օրհասական այդ օրերին,— գրում է հեղինակը,— նրան օգնության ձեռք մեկնեց Ռուսաստանը։ Հայերը, Ռուսաստանի հետ տնտեսական ու քաղաքական կապեր հաստատելով, բազմիցս փորձել են ազատագրվել Թուրքիայի ու Պարսկաստանի լծից։ Սակայն այդ փորձերն անհաջող են անցել»։ Ի վերջո, մեր ժողովրդի ազատագրական մաքառումները հաջողությամբ պսակվեցին սրանից մոտ 144 տարի առաջ, երբ ռուսական զորքերը հաղթականորեն մտան Արևելյան Հայաստանի տերիտորիան։ Եվ, պատահական չէ, որ 1918 թ. Սարդարապատի ճակատամարտին հայ աշխատավորությունը մեկ մարդու պես դիմագրավեց թուրքական անարգ զավթիչներին, պարտության մատնելով նրա՝ թըվով գերակշռող ուժերը։ Բախտորոշ այդ ճակատամարտում ևս անձնվեր կռվեցին հայ, ռուս և այլ ժողովուրդների անվեհեր զավակները։*

*Հաստատվեցին սովետական կարգեր և Հայաստանի աշխատավորությունը ձեռնամուխ եղավ շինարար, ստեղծագործ աշխատանքի։*

*Սրտաբուխ էջեր է նվիրել հեղինակը երբեմնի Ղուգուղուլու շրջանի բազմաթիվ ղեկավարների շնորհակալ գործունեությանը։ Ապագա սերունդները, անշուշտ, երախտագիտությամբ կհիշեն դարավոր անապատը շենացնող խիզախ կոմունիստներին։*

*Արդյունաբերության և տրանսպորտի զարգացմանն է նվիրված մենագրության երկրորդ գլուխը։ Քսանական թվականներին սովետական իշխանության գլխավոր խնդիրն էր՝ վերականգնել ու զարգացնել քայքայված ժողովրդական տընտեսությունը, դնել սոցիալիստական հասարակարգի հիմքերը։ Անհրաժեշտ էր արագ բուժել անցյալի վերքերը, ժողովրդին դարձնել գրագետ, բարելավել նրա նյութական վիճակը։ Եվ ահա սկսվեց Սովետական Հայաստանի էլեկտրիֆիկացումը, որի հիման վրա զարգացավ ծանր ինդուստրիան, բարձրացավ մեր ժողովրդի կենսամակարդակը։ 1924—1925 թթ. սուղ պայմաններում Ղուրդուղուլիում կառուցվեց բամբակազտիչ գործարանը, որը շահագործման հանձնվեց 1925 թ. աշնանը։ Հոկտեմբերյանի շրջանի արդյունաբերության առաջնեկն էր դա։*

*Հեղինակը մանրամասն նկարագրել է գործարանի դիրեկտորներ Ա. Հովհաննիսյանի, Գ. Սուքիասյանի և մյուսների օգտավետ աշխատանքը արտադրության բարձրացման և պլանների կատարման գործում։*

*Հետպատերազմյան տարիներին Հայաստանի մի շարք քաղաքներում, նմանապես և Հոկտեմբերյանում, հուժկու թափով զարգացան մեքենաշինությունը և արդյունաբերության այլ ճյուղեր։ Փաստորեն այդ տարիներին դրվեցին նոր քաղաքի տեխնիկա-տնտեսական հիմքերը։*

*Գրքում բազմաթիվ էջեր են նվիրված Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանի տեխնիկական կարողությունների օգտագործման, սերիական հաստոցների թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում նորարարների կատարած աշխատանքին։ Այստեղ հեղինակը հանգամանորեն նկարագրում է գործարանի լինելության ընթացքը։ Այժմ այն թողարկում է տարբեր տիպի հաստոցներ, որոնք արտածվում են արտասահմանյան մի շարք երկրներ։ Հեղինակն ըստ արժանվույն դրվատում է արտադրության առաջավորներին, որոնք ջանք չեն խնայել՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, կատարելագործելու արտադրապրոցեսները և երկրին տալու բարձրորակ հաստոցներ։*

*Հոկտեմբերյանը Սովետական Միության այն քաղաքներից է, որտեղ վերամշակվում է խորդենին։ Բնորոշ է, որ այս ասպարեզում ևս ռուս ժողովրդի անշահախնդիր զավակներն օգնության եկան հոկտեմբերյանցիներին։ 1938 թ. նոր կառուցված խորդենու վերամշակման գործարանի շինարարության և սարքավորումների տեղադրման աշխատանքները ղեկավարել են գործարանի նախկին դիրեկտոր՝ Բիրյուկովը և գլխավոր ինժեներ Վինչինկոն։ Տարեցտարի ավելանում է շրջանի տնտեսության զարգացման համար մեծ նշանակություն ունեցող խորդենու կանաչ զանգվածի արտադրությունը։ Ներկայումս գործող եթերա-յուղային կոմբինատն, իրավամբ, համարվում է ո՛չ միայն քաղաքի, այլև Հոկտեմբերյանի շրջանի խոշորագույն և շահավետ ձեռնարկություններից մեկը։ Իններորդ հնգամյակում կոմբինատը կարտադրի 29 տոննա եթերայուղ։*

*Այնուհետև հեղինակը պատմում է հանրապետությունում պահածոների խոշոր գործարանի մասին, որի կարողությունը տարեկան հասնելու է 88* մլն *400 հազար պայմանական տուփի։*

Սարդարապատի ջրանցքի կառուցումն ու գյուղատնտեսության նոր վերելքը *վերնագրով գլուխը նվիրված է ոռոգման պրոբլեմին։ Հեղինակն անդրադառնում է շրջանում կառուցվող ջրանցքներին, որոնք վճռական նշանակություն ունեցան գյուղատնտեսության զարգացման համար։ Ջորացվեցին Արարատյան դաշտավայրի ճահճուտները, ամրացվեցին գետափերը, ծավալվեցին ջրամատակարարման աշխատանքները։ Սարդարապատի ջրանցքի շահագործմամբ (1930 թ. նոյեմբերի 29-ին) հիմնականում լուծվեց Հոկտեմբերյանի շրջանի ոռոգման հարցը։*

*Հետաքրքրությամբ են կարդացվում քաղաքի տերիտորիայում գտնվող Նորապատի՝ 1928 թ. կազմակերպված կոլտնտեսությանը նվիրված էջերը։ Բարձր բերք ստանալու համար այն երեք տարի անընդմեջ մասնակցել է համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։ Հայրենական պատերազմի տարիներին կոլտնտեսային դաշտերում կանայք փոխարինեցին ռազմաճակատ մեկնած իրենց ամուսիններին, եղբայրներին... Հեղինակն այնտեղ զետեղել է համագյուղացի ռազմիկների՝ նրանց ուղղված նամակը, այնուհետև նկարագրել կոլտնտեսության տնտեսական ու կուլտուրական վերելքը հետպատերազմյան տարիներին։ Գրքում մի շարք էջեր են նվիրված ՄՏԿ-ներին և պետական այն ձեռնարկություններին, որոնք մեծապես խթանեցին գյուղատնտեսության զարգացմանը։*

*Մենագրության չորրորդ գլխում* (Քաղաքաշինությունը Հոկտեմբերյանում) *հեղինակն ընթերցողներին ծանոթացնում է գյուղի սոցիալիստական զարգացման բոլոր կարևոր բնագավառներին։ Թե՛ նախապատերազմյան և թե՛ հետպատերազմյան տարիներին Հոկտեմբերյանում կառուցվեցին ու շահագործման հանձնվեցին արդյունաբերական նոր ձեռնարկություններ, առողջապահական և կուլտուր-լուսավորական օջախներ, բնակելի շենքեր, անհատական մենատներ, բացվեցին նոր փողոցներ։*

*Այնուհետև Կոզմոյանը մեզ ծանոթացնում է*

---

[1] Կ. Ս. Կոզմոյան. Հոկտեմբերյան, ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1971, 179 էջ:

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ԱՌԱՋԻՆՆԵՐԻՑ ՄԵԿԸ

Անաստաս Իվանովիչ Միկոյանի *Բաքվի ընդհատակը անգլիական օկուպացիայի ժամանակ (1919 թվականին)* խորագիրը կրող աշխատության մեջ հիշատակվող հեղափոխական գործիչների անունների հետ հանդիպեցինք և բոլշևիկ Ոսկանովի ազգանվանը. այն հետաքրքրեց մեզ, և սկսեցինք մեր որոնումները: Փնտրտուք՝ Վրաստանի կոմկուսի Կենտկոմին կից կուսպատմության ինստիտուտի արխիվում, այդ ժամանակներում գործած բոլշևիկների շրջանում, ու մի օր հանդիպեցի Ոսկանովի որդուն՝ Ալբերտ Ոսկանյանին. յոթ տարեկան հասակում նա կորցրել է հորը և նրան հիշում է շատ աղոտ:



Որոնումները, նամակագրությունները շարունակեցինք համատեղ:

Ժամանակ անցավ: Եվ ահա առաջին ծիծեռնակը՝ Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանի նամակը:

«Ստացել եմ Ձեր նամակը,— գրում է ականավոր զորավարը,— ես, ինչպես և սովետական յուրաքանչյուր քաղաքացի, մեծ հարգանք եմ տածում այն հերոսների հիշատակի նկատմամբ, որոնք անձնուրաց պայքարել են մեր երկրում սովետական իշխանության հաղթանակի համար: Այդ մարդիկ, որոնցից շատերն իրենց կյանքը տվել են ժողովրդի բախտավորությանը, արժանացել են ամենամեծ հարգանքի ու մեծարման: Նրանց հիշատակը առհավետ կապրի մեր ժողովրդի սրտում»: Ապա նա հայտնում է, որ այն ժամանակ, երբ ինքը Ալեքսանդրապոլում մասնակցում էր Մայիսյան ապստամբությանը (1920 թ.), Ոսկանյան ամուսինները հեղափոխական աշխատանք էին կատարում Ղարսում, իսկ հետո ղեկավար մասնակցություն են ունեցել Մայիսյան ապստամբությանը Ղարաքիլիսայում (այժմ՝ Կիրովական):

Ձեռք բերեցինք և նրա մի քանի փաստաթղթերն ու նամակները, 1923 թվականին գրած ինքնակենսագրությունը: Այդ ամենը լույս է սփռում հեղափոխության հավատարիմ զինվորի անցած դժվարին ու փառապանծ ուղու վրա:

Ռուբեն Հայրապետի Ոսկանյանը ծնվել է 1891 թվականի հունիսի 1-ին, Անդրկասպյան մարզի Ասխաբադ քաղաքում (այժմ Աշխաբադ): Հայրը (ծագումով Զանգեզուրի Առաջաձոր գյուղից) չարքաշ հայ գյուղացիներից շատերի պես վաղ հասակից բռնում է պանդխտության փշոտ ճամփան: Հայրապետը 12 տարեկանից աշխատել է Բաքվում, հետո՝ Ասխաբադում: Այստեղ էլ, կյանքի դառնությունը ճաշակած, նա ուժերը ներածին չափ օգնում է հեղափոխական աշխատանքներին, որի համար շարունակ գտնվում է ոստիկանության հսկողության տակ, կրում է նրա հալածանքները:



Ռուբենը՝ ծնողների միակ որդին, ավարտում է քաղաքային ուսումնարանը: Սակայն ուսման այդ օջախը նրան քիչ բան է տալիս: Պատանին հասակ է առնում հեղափոխական հոր ազդեցության տակ, ընթերցում արգելված գրականություն, 17 տարին չբոլորած՝ նա աշխատանքի է անցնում, դառնում երկաթուղային հեռագրիչ, նախ՝ Ֆերգանայի մարզի Նամանգանա քաղաքում, ապա՝ Թիֆլիսի նահանգի Վելիսցիխե կայարանում: Ցարական չինովնիկների անարդարացի վերաբերմունքն իր և մյուս ստորադրյալների նկատմամբ, ազգային խտրականությունը խոր ատելություն են սերմանում հեղափոխական գաղափարներով տոգորված զգայուն երիտասարդի հոգում՝ տիրող կարգերի, ցարական բռնապետության նկատմամբ:

Հոր մահից հետո ընտանիքում ստեղծված նյութական ծանր պայմանները Ռուբենին ստիպում են 1913 թվականին փոխադրվել Հեռավոր Արևելք: Այստեղ վարձատրությունը համեմատաբար բարձր էր: Նա աշխատանքի է մտնում Պոսիետի, ապա Վլադիվոստոկի քաղաքային կայարաններում:

Դա այն ժամանակ էր, երբ աշխարհի խոշոր տերությունները, ինչպես և ցարական Ռուսաստանը, երկու ռազմական խմբավորումների բաժանված, պատրաստվում էին ընդհարման. վրա հասավ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը: 1905—1907 թթ. հեղափոխության դառը փորձից ելնելով և ներքին հուզումները կանխելու նպատակով ցարական իշխանությունները երկրի կենտրոնական շրջաններից Հեռավոր Արևելք էին աքսորել բազմաթիվ «անհուսալի» մարդկանց: «Այստեղ,— գրում է Ռ. Ոսկանյանը ինքնակենսագրականում,— ես ծանոթացա տարբեր կուսակցությունների պատկանող շատ աքսորականների հետ»:

Հեղափոխական հոր ազդեցությունը, մարքսիստական գրականության ինքնուրույն ուսումնասիրությունը, շրջապատի անօրինականությունների նկատմամբ անհաշտվողականությունը, ծանոթությունն ու շփումը քաղաքական աքսորականների, կապը Պոսիետ քաղաքի բոլշևիկների ընդհատակի հետ, ճակատագրական են դառնում պատանու կյանքում: Ռ. Ոսկանյանը 1914 թ. ընդունվում է լենինյան կուսակցության շարքերը: Երիտասարդ բոլշևիկը կատարում է տեղի կուսակցական կազմակերպության հանձնարարությունները, տարածում հեղափոխական գրականություն, ագիտացիա մղում պատերազմի դեմ, օգնում կուսակցական առանձին ընկերների արտասահման փոխադրվելուն և այլն: Ցարիզմի տապալման օրերին նա ակտիվ մասնակցում է Հեռավոր Արևելքի հեղափոխական իրադարձություններին:

Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո Ռ. Ոսկանյանը փոխադրվում է Անդրկասպյան երկրամասի Կիզիլ Արվադ քաղաքը: Խառը ժամանակներ էին: Իշխանությունը երկրամասում ձեռքից-ձեռք էր անցնում: 1918 թ. սովետական իշխանությունը Անդրկասպիայում ժամանակավորապես պարտվեց: Էսեռները, որոնց հովանավորում էին անգլիական օկուպանտները, դարձան երկրամասի տերն ու տնօրենը: Նրանց ձեռքն ընկավ և Կիզիլ-Արվադը: Մյուս բոլշևիկների հետ միասին ձերբակալվեց նաև Ռ. Ոսկանյանը: Անգլիական հրամանատարության պահանջով նրան փոխադրեցին Կրասնովոդսկի բանտը, ապա աքսորեցին Ադրբեջան:

Դա 1919 թվականի փետրվարին էր: Ստ. Շահումյանի գլխավորած Բաքվի կոմունան պարտվել էր: Սակայն քաղաքի պրոլետարիատը, կոմունիստների ղեկավարությամբ, շարունակում էր պայքարը Սովետական Ռուսաստանի հետ առևտրական նորմալ հարաբերությունների ստեղծման, ձեռնարկատերերի հետ կոլեկտիվ պայմանագիր կնքելու համար: Աննկուն հեղափոխականը ղեկավար մասնակցություն է ունենում Բաքվի բանվորների՝ 1919 թ. մայիսյան ընդհանուր գործադուլին, որպես բանվորական կոնֆերանսի նախագահության (մշտական գործող) քարտուղար: Գործադուլը, որին մասնակցում էին տարբեր ազգերի պատկանող մոտ 50 հազար բանվորներ, քաղաքական բնույթ ստացավ: Բաքվում ռազմական դրություն հայտարարվեց: Մայիսի 9-ին գործադուլի ղեկավարների հետ միասին ձերբակալվեց և Ռ. Ոսկանյանը: Մոտ երկու ամիս բանտում պահելուց հետո, մի խումբ բոլշևիկների հետ նրան ևս արտաքսեցին մուսավաթական Ադրբեջանի սահմաններից:

Այնուհետև Ռ. Ոսկանյանին տեսնում ենք Թիֆլիսում, ուր նա կապ է հաստատում ընդհատակում գործող ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի անդամների հետ, նրանց հանձնարարությամբ կատարում կուսակցական գործնական աշխատանք: Մենշևիկյան կառավարության գործակալները կրնկակոխ հետևում էին բոլշևիկներին: Նրանց աչքից չվրիպեց Ռ. Ոսկանյանը: Մենշևիկյան կառավարության ներքին գործերի մինիստրությունը նրան առաջարկեց անհապաղ թողնել Վրաստանի սահմանները:

Հայտնի է, որ ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն, կուսակցական կազմակերպությունները ուժեղացնելու համար, 1919 թվականին, Բաքվից, Թիֆլիսից և մյուս քաղաքներից Հայաստան ուղարկեց մեծ թվով փորձված բոլշևիկների: Ռ. Ոսկանյանը նույնպես երկրկոմի ուղեգրով եկավ Հայաստան:

Դաշնակցականների տեռորիստական խիստ ռեժիմի պայմաններում Ռ. Ոսկանյանը բեղմնա-

վոր աշխատանք է ծավալում Ալեքսանդրապոլի երկաթուղայինների շրջանում՝ ղեկավարելով նրանց արհմիութենական կազմակերպությունները, մասնակցում է Ալեքսանդրապոլի կուսկազմակերպության՝ 1919 թ. դեկտեմբերյան և ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների 1920 թ. հունվարյան հայտնի կոնֆերանսներին:

Հիշարժան է Ռ. Ոսկանյանի գործունեությունը Ղարաքիլիսայում, ուր նա լայն աշխատանք է ծավալում տեղի կուսակցական կազմակերպության վերականգնման, 1920 թ. Մայիսյան ապստամբության նախապատրաստման համար, մասնակցում դաշնակցական կառավարության դեմ հայ աշխատավորների, հատկապես երկաթուղայինների մայիսյան զինված ելույթներին, սովետական իշխանության հաղթանակի համար մղվող պայքարին:

Հայաստանում հաստատվում են սովետական կարգեր: 1920 թ. դեկտեմբերի 13-ին, Ռ. Ոսկանյանը նշանակվում է հանրապետության հաղորդակցության ճանապարհների և կապի ժողովրդական կոմիսար: Սովետական Հայաստանի հաղորդակցության ճանապարհների և կապի առաջին ժողկոմն ամբողջապես նվիրվում է բանվորների ու աշխատավոր գյուղացիների իշխանության ամրապնդմանը, դաշնակների տիրապետության տարիներին քայքայված տրանսպորտի և կապի միջոցների վերականգնմանը:

Կուսակցությունը Ռ. Ոսկանյանին հետագայում վստահում է մի շարք պատասխանատու պոստեր: Նա եղել է Կովկասի հաղորդակցության ճանապարհների ժողկոմի տեղակալ, ՌԿ(բ)Կ Բաշկիրիայի մարզային կոմիտեի, ՌԿ(բ)Կ Ալթայի նահանգային կոմիտեի քարտուղար, կուսակցական ղեկավար աշխատանք է կատարել Ղազախստանում, վարել է Տոմսկի երկաթուղու քաղբաժնի պետի պաշտոնը, աշխատել Սարատովում և այլուր:

Ռ. Ոսկանյանն ընդհատակյա աշխատանքի պայմաններում և սովետական իշխանության տարիներին աչքի է ընկել որպես հետևողական լենինյան: Նա օժտված էր բոլշևիկյան ղեկավարի ցայտուն հատկություններով:

Տեսականորեն և քաղաքականապես պատրաստված, հեղափոխական պայքարի բովում կոփված, կազմակերպչական ընդունակություններով օժտված, տոկուն, կարգապահ ու գործունյա, կուսակցության և ժողովրդի գործին անսահման նվիրված ազնիվ կոմունիստ էր Ռուբեն Հայրապետի Ոսկանյանը, որի կյանքի թելը կտրվեց 1937 թվականին:

Ա. Ն. ՌԵԴԼԱՐՅԱՆ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ.

Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 27—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 03341  Պատվեր 839  Թղթի չափսը 70×108 1/16:  Տիրաժ 13.830  Գինը 25 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:  Ստորագրված է տպագրության՝ 6/VI 1972 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Կադրերի մասին *(ժողովածու), Մ.,* «Политиздат», *1971:*

Գեյշ Գ. Մ.— Քո Վ. Ուլյանով: *Վ. Ի. Լենինը հարազատներին հղած նամակներում: Լենհրատ, 1971, 392 էջ:*

ԲՐԵԺՆԵՎ Լ. Ի.— Սովորել, աշխատել և պայքարել լենինաբար: *Ճառ ուսանողների համամիութենական հավաքում 1971 թ., հոկտեմբերի 19-ին: «Հայաստան» հրատ., 1971:*

Լենինյան թեման պատմության ուսուցչի աշխատանքում *(Բարձր դասարանների պատմության ուսուցչի աշխատանքի փորձից): Մ.,* «Педагогика» *հրատ., 1971:*

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում և որոշումներում *(1898—1971): Հատոր հինգերորդ: 1931—1941: Մ.,* «Политиздат», *1971:*

Մատերիալիստական դիալեկտիկայի ժամանակակից խնդիրները: *Մ.,* «Мысль» *հրատ., 1971:*

Գիտական կոմունիզմի սկզբնական դասընթաց: *Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրների համար: Մ.,* «Политиздат», *1971:*

ԱՅՎԱԶՅԱՆ Վ. Հ.— Կապիտալիզմ, տեխնիկա և տեխնոկրատիա: *«Հայաստան» հրատ., 1971:*

*Այս երկում հեղինակը հետազոտել է տեխնոկրատիայի էության հետ կապված բոլոր հարցերը և առնչվող տեսությունները:*

ՊԵՐՖԻԼԵՎ Մ. Ն.— Սովետական դեմոկրատիան և բուրժուական «սովետագիտությունը»: *Մ.,* «Юридическая лит.» *հրատ., 1971:*

Խոշոր կեղծիք պատերազմի մասին: *Երկրորդ համաշխարհային պատերազմի բուրժուական նորագույն պատմագրության քննադատությունը: Մ.,* «Воениздат», *1971:*

ՊԵՏՐՈՍՅԱՆ ՅՈՒ. Ա.— Երիտթուրքերի շարժումը *(19-րդ դարի երկրորդ կես—20-րդ դարի սկիզբը): Մ.,* «Наука», *հրատ., 1971:*

ԻՍԱՀԱԿՅԱՆ Հ. Ա.— ՌՍԴԲԿ կենտրոնական մամուլը և Անդրկովկասը *(1901—1917 թթ.): Եր., Համալսարանի հրատ., 1971:*

*Այս գրքում պարբերական մամուլի, արխիվային փաստաթղթերի և այլ աղբյուրների հիման վրա արտացոլված է Անդրկովկասում բոլշևիկյան կազմակերպությունների ամրապնդման, հեղափոխական շարժումների ծավալման, աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության և շատ այլ բնագավառներում ՌՍԴԲԿ կենտրոնական մամուլի խաղացած դերը:*

ՉԵԲՈՔՍԱՐՈՎ Ն. Ն. և ՉԵԲՈՔՍԱՐՈՎԱ Ի. Ա.— Ժողովուրդներ, ռասաներ, կուլտուրաներ: *Մ.,* «Наука» *հրատ., 1971:*

Հայկ. ՍՍՀ ժողովրդական տնտեսությունը 1970 թ. *(վիճակագրական տարեգիրք), Ե., ՀՍՍՀ Կենտվիճվարչ. հրատ., 1971:*

ՍՄԻՌՆՈՎ Գ. Լ.— Սովետական մարդը: *Սոցիալիստական անհատի կերպարի ձևավորումը: Մ.,* «Политиздат», *1971:*

ՌԱՁՈՒՄՆԻ Վ. Ա.— Արվեստի կուսակցականության մասին: *Բանավիճական ակնարկ: Մ.,* «Изобр. искусство» *հրատ., 1971:*

ԿԱՐԻՆՅԱՆ Ա. Բ.— Հովհաննես Թումանյան *(Հուշեր, հոդվածներ): Եր., ԳԱ հրատ., 1971:*

ԽՈՒՄԱՐՅԱՆ Գ. Ս.— Աշոտ Խումարյան: *«Հայաստան» հրատ., 1971:*

ԱՂԵԿՅԱՆ Թ. Ա.— Աստղեր, գալակտիկաներ, մետագալակտիկա: *«Հայաստան» հրատ., 1971: (Ձևնարկ աստղագիտության նվաճումների մասին):*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՎԱՐՈՐԴՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Ձմեռն աշխատանքի ամենադժվար ժամանակն է այն վարորդների համար, որոնց մեքենաները գիշերում են բաց երկնքի տակ։ Ենիսեյի և Յարցևի անտառարդյունաբերության տնտեսության դիզելային տրակտորների վարորդներն առաջարկում են հեշտ և շատ մատչելի մի միջոց. դանդաղ պտույտներով բանող շարժիչի կարտերի մեջ ջուր լցնելուց առաջ ավելացնել բենզին. որպեսզի բենզինը լավ լուծվի յուղի մեջ, անհրաժեշտ է բենզինը խառնելուց 3—4 րոպե հետո անջատել շարժիչը։*

*Ջրախառն յուղը գիշերը չի թանձրանում և առավոտյան մեքենան հեշտությամբ գործի է գցվում։*

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԿԱԹ

*«Պլանտմիլկ լիմիտեդ» անգլիական կոմպանիան ստեղծել է մի ապարատ, որը կերաբույսերից ստանում է արհեստական կաթ։ Այդ ապարատի կառուցվածքը նման է կովի մարսողական օրգաններին։ «Մեխանիկական կովը» սնվում է կաղամբով, լոբազգիների տերևներով և օրական տալիս է 60 լիտր սպիտակուցային հեղուկ, որը շատ նման է բնական կաթին։*

## ՀԱԿԱԱԼԿՈՀՈԼԱՅԻՆ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ «ՔԻԹ»

*Ճապոնական ավտոմեքենաշինական «Խոնդա» ֆիրմայի աշխատակիցները պատրաստել են էլեկտրոնային սարք, որն արգելում է խմած վարորդին ղեկավարել մեքենան։ Հենց որ աննշան չափով խմած վարորդը նստում է ղեկի մոտ և ուզում է միացնել շարժիչը, այն ոչ մի կերպ չի միանում, իսկ եթե մինչև այդ միացված է եղել, 10 վայրկյանում անջատվում է։ Սարքն այնքան զգայուն է սպիրտի նկատմամբ, որ շարժիչն անջատվում է նույնիսկ այն ժամանակ, երբ մեքենայի կողքին կանգնում է մի բաժակ ալկոհոլային խմիչք ընդունած մարդը։ Սարքն զգում է անգամ օծանելիքի հոտը, քանի որ այն ևս որոշ քանակությամբ սպիրտ է պարունակում։*

## ՀՐԴԵՀԱՇԵՋ ՆՈՐ ՄԻՋՈՑ

*Շվեդական «Լիդգրեն ի կոմպանիա» ֆիրմայի լաբորատորիայում ստացվել է քիմիական մի միացություն, որը 25 անգամ մեծացնում է ջրի հրդեհաշեջ հատկությունը։ Այդ նյութը, որը ֆիրման կոչել է «ստերժել», պարունակում է մակերեսակտիվ պոլիէթիլենի արտադրական օքսիդ և ածխաջրածիններ։ Փոքր քանակությամբ «ստերժել» խառնելով ջրին, այն դառնում է խիստ մածուցիկ հեղուկ։ Վերջինս վառվող մակերեսի վրա առաջացնում է դոնդողանման, հաստ շերտով ծածկույթ և արագ մարում է հրդեհը, իսկ տաքացած մակերեսը սառչում է ավելի շուտ, քան սովորական ջրի դեպքում։ Դոնդողի մածուցիկությունն զգալիորեն նվազեցնում է նաև հրդեհների մարման ժամանակ ջրի պատճառած կորուստը։*

## ՀՍԿԱՆ ԵՎ ԹԶՈՒԿԸ

*ԱՄՆ-ի ամենահզոր անիվավոր տրակտորներից մեկն արտադրում է «Քեյս» ֆիրման։ Այդ տրակտորների հաղորդակների 8-ատամնանի տուփերը տրակտորին հնարավորություն են ընձեռում շարժվելու ժամում 2,5—14 կմ արագությամբ։ Բոլոր անիվները քարշող են և կառավարվող։ Անկախ կառավարման ձևից, մեքենայի առջևի և հետևի անիվներն ունեն մանևրելու մեծ հնարավորություն և նույնիսկ կարող են շարժվել կողքի թեքված։ Վարորդի հարմարավետ խցիկում խտացված օդ կա։*

*Ամենափոքր տրակտորներ թողարկում է «Գրավելի» ֆիրման. դրանց հզորությունը 8 ձիաուժ է, քաշն՝ ընդամենը 150 կիլոգրամ. այն նախատեսված է մանր ֆիրմաների համար։*